# ԼՈՒՍԱԲԱՑ

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

Գիշերը սևուկ թռչունի նման
Իջնում է գետնին, կեր է որոնում,
Սարն երազի մեջ քայլում է անձայն՝
Կանաչ թիկնոցն է փնտրելու գնում:

Կեսգիշերային լռության միջով,
Հայացքը ամպոտ, ինքը՝ գլխաբաց,
Մի ծերունի է դաշտերով քայլում,
Փոքրիկ թոռնիկի ձեռքն ամուր բռնած:

— Փոքրի՛կս, արդեն քայլել չեմ կարող,
Դու մենա՛կ գնա, ես շատ եմ հոգնած,
Չորս կողմ տարածված խաղաղ ձյուներին
Պիտի խառնվեմ մինչև լուսաբաց...

Սպիտակ շղարշն է փայլում լուսնի,
Լուռ դողդողում են աստղերը վերում,
Մենակ քայլում է փոքրիկ երեխան,
Ծերմակ սափոր կա նրա ձեռքերում:

Նա դատարկում է սափորը դանդաղ,
Ու լուսաբացն է փռվում դաշտերում,
Եվ բնության մեջ ամե՛ն, ամեն ինչ
Ծերմակ լույսերի մեջ է ողողում:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# ՇՆՈՐՀԱՎՈ՛Ր ՆՈՐ ՏԱՐԻ

## Ո՞Վ Է ՁМԵՌ ՊԱՊԸ

*ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

Մեր դպրոցի մեծ՝ հավաքովի տոնածառի եղևնիները անտառապահ Վարդան պապն ինքն էր իր հսկողության տակ գտնվող անտառակից ընտրել, ինքն էր իր ձեռքով կտրել այնպես, որ անտառին չվնասի և իր սահնակին բարձած՝ բերել հասցրել մեզ: Հիմա էլ արած գործից գոհ, նստել է դահլիճի մի անկյունում ու բեղի տակ ժպտալով՝ հետևում է, թե ինչպես ենք կարդարում Նոր տարվա կանաչ ուրախությունը:

Վարդան պապը սովորական պապ ու սովորական անտառապահ չէ: Բուսաբանության և պատմության մեր ուսուցիչները նրա հետ կրուցում են ծոցատետրն ու մատիտը ձեռքներին և գրի են առնում նրա ասածներից շատ բան: Մեր ուսուցիչների ասելով, նրա ուսուցիչները բնությունն ու կյանքն են: Ուրախ էինք, որ մեզ նվիրած տոնածառի հետ, այսօր նա ինքն էլ է իր ներկայությամբ կարդարում մեր ուրախ տոնահանդեսը:

Վարդան պապը երևի հոգնեց ու մեր ավագ ջոկատավար ընկեր Թորգոմի հետ դահլիճից դուրս գնաց: Հենց այն է Վարդան պապը նոր էր գնացել, երբ դահլիճի լույսերը հանգան:

Քիչ անց էլեկտրական լամպերը տոնածառի վրա ու դահլիճում կրկին վառվեցին և... բոլորս տեսանք, որ տոնածառի տակ Վարդան պապի նման վիթխարի հասակով կանգնած է մի Ձմեռ պապ: Ճիշտ է նրա բեղերն ու մորուքն ավելի ճերմակ էին, քան Վարդան պապինը, բայց ձայնն ու ժպիտը իսկ և իսկ նրանն էին:

— Բարև՛, ճուտե՛ր,— ասաց ժամանակից շուտ եկած Ձմեռ պապը:

— Բարև՛,— պատասխանեցինք մենք:

— Ուրեմն, բարև՛,— կրկին ասաց նա:

— Բարև՛,— ծիծաղեցինք մենք:

— Նշանակում է այսպես,— Վարդան պապի ձայնով սկսեց Ձմեռ պապը,— անցնում էի այս կողմերով, գնում էի եկող Նոր տարուն դիմավորելու, մեկ էլ հանկարծ նկատեցի ձեր պատրաստած տոնածառն ու որոշեցի ներս մտնել...

— Լավ ես արել, Վարդա՛ն պապ, այսինքն, Ձմե՛ռ պապ,— ասաց կատակաբան Համոն,—իսկ ո՞ւր է հապա չիր ու չամչի տոպրակը:

— Ի՞նչ չիր ու չամչի տոպրակ,— կարմացավ Ձմեռ պապը,— այս տարի ոչ մի նվեր էլ չեմ բաժանելու, հիմա որոշել եմ ինքս նվերներ ստանալ ձեզանից:

— Այդ ինչպե՞ս կլինի,— խռովածի պես ասաց Համոն,— էլ ի՞նչ Ձմեռ պապ, որ նվերներ չբաժանի:

— Ինչո՞ւ չի լինի: Ա՛յ, աշխարհի տարբեր ժողովուրդներ ունեն տարբեր սովորույթներ ու տարբեր



ձևով էլ նշում են Նոր տարին,— նստելով մի աթոռի, սկսեց Ձմեռ պապը:— Նախ, ես ձեզ մի հարց տամ. ո՞վ է Ձմեռ պապը:

— Ձմեռ պա՞պը, դե Ձմեռ պապն է, էլի՜,—շտապեց Լիլիթը:

— Չեղավ...

— Ձմեռ պապը մեր Վարդան պապն է...



— Այդ էլ չեղավ, Համո՛:

— Բա ո՞վ է, պա՛պ...

— Նա Նոր տարվա համբավաբերն է, ուրախ հանդեսների ամենասիրելի հյուրը, ինձ նման աշխարհ տեսած, իմաստուն և սպիտակամորուք մի ծերունի: Բայց եղել է ժամանակ, երբ Ձմեռ պապը համարվել է արև, աստված: Նա հայտնվել է բարձրահասակ, ուժեղ երիտասարդի տեսքով, ամբողջովին







կանաչով պուգված: Նա իր գեղեցիկ ձին նստած՝ շրջել է դաշտերում, մտել գյուղից-գյուղ ու ոչ թե նվերներ է բաժանել, այլ ինքն է նվերներ հավաքել, բա՛, պտի՛կ Համո, իսկ դու ասում ես՝ «Էլ ի՞նչ Ձմեռ պապ, առանց նվերների»: Իսկ հիմա մի ուրիշ հարց. կարո՞ղ եք ասել, թե ինչ բան է եղևնին, ինչո՞ւ են մարդիկ Նոր տարին դիմավորելիս եղևնիներ զարդարում:

Ոչ ոք չգիտեր:

— Եղևնին էլ, երեխանե՛ր, արևի խորհրդանիշն է: Որտեղ շոգ է, եղևնի չկա, այնտեղ էլ ընդունված է ուրիշ բույսերից տոնածառ զարդարել: Ա՛յ, Վիետնամում Նոր տարուն երեխաները երգում ու պարում են դեղձենու շուրջը, Ճապոնիայում՝ բամբակի, սոճու, սալորենու, բալենու, իհարկե, նաև եղևնու, եթե կարողանում են ճարել: Կրակն էլ է արևի և հավերժության խորհրդանիշ: Կան ժողովուրդներ, որոնք մինչև այսօր էլ Նոր տարին նշելիս մեծ խարույկներ են վառում: Այդպես է, օրինակ՝ Ամազոնի, Այլասկայի, Խաղաղ օվկիանոսի կղզիների բնակիչների մոտ: Իսկ Հնդկաստանում մարդիկ իրենց «պանգոլի» օրը հավաքվում են խարույկի շուրջ և սպասում տոնական կաթնապուրի եփվելուն, որը Նոր տարին պիտի դարձնի առատ և ուրախ: Կրակը մեծարելու այդ հին սովորույթը պահպանվել է նաև Իրանում: Այստեղ մարդիկ իրենց «նովրուզի»՝ այսինքն Նոր տարվա օրերին հսկայական ջահեր են վառում, իբր դրանով հալածում են չարն աշխարհից: Այս նույն՝ մեր հարևան Իրանում հին ժամանակներից սկսած մի սովորություն էլ կա: Նոր տարվա նախօրյակին տանը եղած բոլոր կավե ամանները պետք է փոխվեն: Այդ պատճառով էլ իրանցիները կոտրատում են իրենց ունեցած բոլոր կավե ամանները:

— Զարմանալի սովորություն է,— ծիծաղեց Համոն:

— Զարմանալի է, թե՝ ոչ, այդպես է,— ասաց մեր բանիմաց Ձմեռ պապը:— Իսկ Կուբայում, օրինակ, Նոր տարվա մի ուրիշ սովորություն կա: Այնտեղ էլ կուբացիները իրենց ունեցած բոլոր սափորները ջուր են լցնում և, երբ ժամացույցի սլաքները ցույց են տալիս ժամը 12-ը, կատակասեր տանտերերը սափորների ջուրը պատուհաններից դուրս են թափում:

— Ինչո՞ւ:

— Դա նշանակում է, որ հին, ծերացած տարին ավարտվեց, որ Նոր տարուն ցանկանում են իրենց առջև ջրի նման պարզ ու մաքուր ճանապարհ:

— Ինչ հետաքրքի՜ր է,— ասաց Վահանը,— դուրս է գալիս՝ աշխարհում ինչքան ժողովուրդ կա, այնքան էլ Նոր տարվա սովորություններ:

— Այդպես է որ կա,— համաձայնեց Ձմեռ պապը:— Ա՛յ, հենց Ճապոնիայում, որի մասին քիչ առաջ ասացի, գիտե՞ք ինչ մեծ տոն է համարվում Նոր տարին: Այնտեղ հանդեսները մի ամբողջ շաբաթ են տևում: Ասում են, ճապոնացի աղջիկները հավաքում են, այսպես ասած, գարնանային յոթ խոտ: Տոնի յոթերորդ օրը տանտերը տեսակ-տեսակ կերակուրներ է պատրաստում թե՛ հավաքած կանաչեղենից, և թե՛ բրնձից: Հետո վառվում են մոմերն ու զարդարվում են տոնածառերը:

— Պա՛պ, իսկ Եվրոպայում ինչպե՞ս են նշում Նոր տարին,— հարցրեցի ես:

— Եվրոպայում սիրված է կանաչ եղևնին: Իհարկե, եվրոպական տարբեր երկրներում, տարբեր ձևով են նշում Նոր տարին: Հունգարիայում երիտասարդները տոնական երթեր են կազմակերպում, որի առջևից քայլում են երաժիշտներն ու մունետիկները, այսինքն՝ համբավաբերները: Նրանք բարձրաձայն կանչում են ի լուր բոլորի, որ հին տարին թաղված է: Ռումինիայում Նոր տարվա կարկանդակներ են թխում: Նրանց մեջ սովորաբար, մանր դրամներ, ճենապակյա իրեր, մատիտներ կամ էլ կարմիր պղպեղի պատիճներ են դնում: Բուլղարիայում դեկտեմբերի 31-ի գիշերը երեք րոպե հանգցնում են լույսերը և մարդիկ, ով ում հետ պատահի, համբուրվում են: Գերմանիայում Ձմեռ պապը հայտնվում է աղջկա շորեր հագած, շպարված դեմքերով տղաների խմբի ուղեկցությամբ: Խումբը երգ ու նվագով այցելում է տները: Նրանք խելոք երեխաներին նվերներ են բաժանում, իսկ չարերին վախեցնում մոխրով լի սարսափելի պարկով:

— Վա՜յ, ի՜նչ հետաքրքիր սովորություններ են,— ասաց Լիլիթը:

— Այո՛, բայց այդ սովորությունները մշակվել են դարերի ընթացքում,— շարունակեց մեր գիտուն Ձմեռ պապը:— Ա՛յ, եղևնու մեծարումը միանգամից չի առաջացել: Դա սկզբում ընդունված է եղել գերմանացիների մոտ, որովհետև եղևնին նրանք համարում էին բոլոր ծառերի, անտառների պահապան, թռչունների և գազանների հովանավոր:




— Պա՛պ, ինչքա՞ն շատ բան գիտես:

— Դե՛հ, ես էլ, Համո՛, քեզ նման սիրում եմ գրքեր կարդալ, ռադիո լսել ու հեռուստացույց դիտել,— բեղը շոշափելով ասաց Ձմեռ պապն ու ծիծաղեց:— Ա՛յ, դուք ինձ շարունակ Ձմեռ պապ, Ձմեռ պապ եք կոչում, իսկ գիտե՞ք, թե ուրիշ տեղերում ինչպես են ինձ անվանում:

— Ո՛չ,— ասացինք խմբով:

Ուրեմն լսեցեք: Ֆրանսիայում ինձ անվանում են Պեր Նոյել, Անգլիայում ու Ամերիկայում՝ Սանտա Կլաուս...

— Իսկ, պա՛պ, աշխարհի բոլոր ժողովուրդները նո՞ւյն օրն են դիմավորում Նոր տարին,— հարցրեցի ես:

— Շատ հնում տարբեր ժողովուրդներ, տարբեր ժամանակ են տոնել Նոր տարին, դա կապված է եղել գարնան և աշնան հողային աշխատանքների հետ: Ճապոնիայում և Կորեայում տարվա սկիզբ է համարվել փետրվարի մեկը, հին Պարսկաստանում՝ գարնան օրահավասարի օրը՝ մարտի վերջին, Հին Հռոմում, ոչ թե մարտի վերջին, այլ՝ մեկին: Միայն Հուլիոս Կեսարի ռեֆորմից հետո սկսեցին Նոր տարին համարել հունվարի մեկը:

Իսկ Ռուսաստանում առաջին անգամ Պետրոս Մեծն է իբրև տոնածառ օգտագործել եղևնին: Նա 1700 թվին հրամայեց Նոր տարին սեպտեմբերի մեկի փոխարեն նշել հունվարի մեկին:

— Սեպտեմբերի մե՛կի փոխարե՞ն:

— Ինչո՞ւ ես զարմանում, Վահա՞ն, մենք՝ հայերս էլ անցյալում Նոր տարին տոնել ենք ոչ թե հունվարին, այլ օգոստոսին և կոչում էինք Նավասարդ:

— Վա՛յ, Ձմե՛ռ պապ, ասացիր. «Մենք՝ հայերս» - ծիծաղեց մեր Համոն, նշանակում է դու էլ հա՛յ ես...

— Դե, իհարկե, հայ եմ, ա՛յ սատանի ճլուտ,— ծիծաղեց տարօրինակ Ձմեռ պապն ու դեմքից վերցրեց դիմակը:

Մենք հենց սկզբից էլ գիտեինք, որ Վարդան պապն էր կատակի համար Ձմեռ պապի զգեստներ հագել, ծիծաղեցինք ու մեր սիրելի անատառապահին շրջապատած դուրս եկանք փողոց: Դրսում տաք երեկո էր, երկինքը՝ խոշոր, փափուկ փաթիլներով ձյունն հեքիաթ էր մաղում ծառերին, տներին, դաշտերին ու աշխարհին...



# ՍՊԱՍՈՒՄ

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

Երկնքի վրա
երկրից թափվում է
տեղատարափը գոլորշիների:

Ամպերն ու քամին
մանուկների պես
սիրում են խաղալ
երկնային կապույտ սիզախոտերում:

Ամպերի ծաղկած բացատների մեջ
ոսկեգույն, փոքրիկ մեղուների պես
անվերջ բզզում են
շողերն արևի
ու քաղցրությունն են հավաքում օրվա:

Դեռ անձրևները չեն հասունացել
ամպերի մտքում,
և կարկուտները
խակ մրգերի պես
ճութ-ճութ չեն կախվել
ճյուղից ամպրոպի:

Ճերմակ ամպերի պատերի ներսում
խաղաղ քնել է
հեքիաթի տղան
և երազի մեջ տեսնում է, ինչպես
փոքրիկ մի աղջիկ
երկնային կապույտ սիզախոտերում
անմոռուկներ է փնջում իր համար:

Նկ. ՍԱՐԱ ԿԱԼԵՆՑԻ





# ՏԱՐԵՄՈՒՏ

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

— Գիտե՞ս ամեն անգամ ինչքան էներգիա ենք ծախսում կրոյական տարածությունից դուրս գալու և վերադառնալու վրա,— իրենն էր պնդում ռոբոտը,— բայց դա քեզ չի էլ հետաքրքրում, դու ամեն տարի նույնն ես պահանջում:

— Որովհետև Նոր տարին տարվա մեջ մի անգամ է լինում,— ասաց Արգամը:— Եվ ես ուզում եմ մարդավարի տոնել այն:

— Քո արարքները ոչ մի տրամաբանության չեն ենթարկվում,— շարունակում էր ռոբոտը:— Ինչո՞ւ ես այդպես զուգվում-զարդարվում, ինչո՞ւ ես հագնում այդ անհարմար հագուստները: Նույնիսկ փողկապ ես կապում: Միայն որպեսզի նայես, ապասես ժամը տասներկուսի՞ն:

Արգամը՝ նայեց իր տոնական հագուստներին, որոնք վերջին անգամ ուղիղ մի տարի առաջ էր հագել: Ամեն ինչ կարգին էր, տեղը-տեղին: Բոլորովին էլ անհարմար չէին, ինչպես ռոբոտն էր պնդում, և նա նույնիսկ հաճույք էր զգում դրանցից:

— Ժամը տասներկուսին տարին փոխվում է,— ասաց նա,— ինչպես դիմավորես Նոր տարուն, այնպես էլ կապրես ամբողջ տարին:

— Դա միայն այդպես ասում են,— քրթմնջաց մեքենան:— Դու էլ գիտես, որ դա միայն ասում են: Իսկ տասներկուերորդ ժամը ոչ մի բանով չի տարբերվում մյուսներից: Նա էլ մյուս ժամերի նման, պարզապես ժամանակի հոսքն է ներկայացնում: Միայն թե դու նրան այլ կերպ ես սպասում, առանձնահատուկ իմաստ վերագրում նրան...

— Կարևորը ժամը չէ,— կրկնեց Արգամն այն, ինչ կրկնում էր ամեն տարի:— Կարևորն ավանդույթն է, արարողությունը, այն, որ նոր ժամանակի սկիզբ է խորհրդանշում: Անշուշտ, այստեղ ես ինքս էլ ինձ համար կարող էի առանձին օր ու ժամ սահմանել, և աշխարհում դրանից ոչինչ չէր փոխվի: Միայն թե ամեն ինչ կլիներ արհեստական:

— Մարդիկ սիրում են իրենց պարուրել պանապան պայմանականություններով, որոնք համարյա միշտ կույր են որևէ իմաստից ու ոչ մի բանի պետք չեն,— բացատրեց մեքենան:— Եվ դարեր շարունակ մտածողության իներցիայով դրանցից ազատվել չեն կարողանում:

Ծավալացույցը միացրած էր: Սակայն Տիեզերքի այդ հեռավոր անկյունում կապի մասին խոսք լինել չէր կարող: Էկրանին միայն ձյունի ճերմակ փաթիլներ էին փայլփլում:

Այդպիսին է Հետապնդող-աստղագնացի աշխատանքը: Նա միշտ թռչում է միջաստղային բանուկ ճանապարհներից շատ հեռու, որովհետև ինքն է նոր ուղիներ զգում, հիմք դնում նոր ճանապարհների:

Այդ ուղիները գցվում են զրոյական տարածության միջոցով, և դա հնարավորություն է տալիս նույնիսկ ամենահեռավոր աստղերը կառավարող թռիչքների տևողությունը հասցնել նվազագույնի:

Արգամը մոտեցավ սրահի կենտրոնում կանգնած Տոնածառին, որը շողշողում էր բազմագույն լույսերի մեջ:

— Երկրում Տոնածառի շուրջը միշտ երեխաներ են պարում,— ռոբոտին դարձավ նա:— Ու երգում են: Մի երգ կա. «Տոնածառ ջան, տոնածառ, ինչ սիրուն ես ու պայծառ»: Շատ սիրուն երգ է... Ուզո՞ւմ ես, միասին երգենք...

— Մարդիկ մեծանալուց հետո էլ երեխա են մնում, նկատեց ռոբոտը՝ առանց նրա առաջարկին ուշադրություն դարձնելու: Դու էլ ես քմահաճ երեխա...

— Դու չես էլ պատկերացնում, թե հենց այս պահին ի՞նչ իմաստուն բան ասացիր,— բացականչեց Արգամը:— Իհարկե, մարդիկ միշտ էլ երեխա են մնում: Եվ որքան ավելի շատ են երեխա մնում, այնքան ավելի երջանիկ են լինում: Իսկ ռոբոտները ծնվում են միանգամից մեծացած, նրանք երբեք երեխա չեն լինում: Ահա, թե ինչու դու շատ-շատ բան չես հասկանում...

— Կարծո՞ւմ ես,— թերահավատ հարցրեց ռոբոտը:

— Համոզված եմ: Դու, օրինակ, չգիտես, թե ինչպես են երեխաները անհամբեր սպասում Նոր տարուն:

Անսպասելիորեն էկրանը բռնկվեց գույներից, որոնք ծավալվելով բռնեցին ամբողջ պատը: Այնպես պատահում էր միայն մեծ հեռավորության հաղորդումների ընկալման ժամանակ:

Արգամը, խոսքը կիսատ թողած, նետվեց սեղանի մոտ, որը դրված էր էկրանի դիմաց: Էկրանին միայն գույներ էին՝ գունային սիմֆոնիա: Բայց դա դեռ միայն սկիզբն էր:

Քիչ անց, կարծես, կախարդական փայտիկի հարվածով, բոլոր գունագծերն ու կետերը խառնվեցին իրար: Ապա պարզվեցին: Էկրանի վրա, տոնական սեղանի մոտ, ձյունափայլ շրջազգեստով մի աղջիկ հայտնվեց.

— Բարև՛,— ասաց աղջիկը:

— Բարև՛,— պատասխանեց Արգամը:— Բարև՛, Ձյունանուշի՛կ:

Աղջիկը ծիծաղեց ու ձեռքի թեթև շարժումով ուղղեց երկար մազերը: Նրանց երկուսի սեղանները, ասես, իրար շարունակություն էին կազմում, և թվում էր, թե նրանք նստած են միևնույն երկար սեղանի երկու հակադիր ծայրերում:

— Ես Լիլիթն եմ,— ասաց աղջիկը:— Երկրորդ կարգի Հետազոտող: Զրոյական տարածությունից դուրս եմ եկել Նոր տարին դիմավորելու: Կյանքումս առաջին անգամ...

— Ես Արգամն եմ,— ասաց Արգամը:— Առաջին կարգի Հետազոտող: Վաղուց արդեն մոռացել եմ, թե զրոյական տարածությունից որերորդ անգամ եմ փախչում տարեմուտը տոնելու համար: Բայց մինչև հիմա միշտ միայնակ եմ եղել...

— Ինչ հրաշալի՛ է, որ հանդիպեցինք,— ժպտաց Լիլիթը:— Ես վախենում էի, թե միայնակ կլինեմ Տիեզերքի այս ծայրամասում:

— Հուսով եմ, որ մենք միասին կդիմավորենք տոնը,— ասաց Արգամը:— Բայց այս պահին երկուսիս նավերն էլ խելագար արագությամբ սլանում են ինչ-որ ուղղություններով: Պարզապես, բացառիկ պատահականություն էր, որ հանդիպեցինք: Եվ ամենից հավանականը այն է, որ տարածության մեջ մենք առայժմ մոտենում ենք իրար: Իսկ հետո կսկսենք հեռանալ...

— Մինչ այդ մենք կհասցնենք միասին անցկացնել տարեմուտը,— համոզված ասաց աղջիկը:— Չի կարող պատահել, որ մինչ այդ մենք այնքան հեռանանք, որ այլևս չկարողանանք տեսնել ու լսել իրար:

— Իհարկե,— համաձայնեց Արգամը:— Մենք դրա համար չենք հանդիպել, որ բաժանվենք Նոր տարուց առաջ:

Նրանք մի պահ լուռ էին:

— Իմ ռոբոտը կատակել է,— հանկարծ ծիծաղեց աղջիկը:— Կարծում է, խելքս թռցրել եմ: Եռաչափ տարածություն դուրս գալու համար ծախսած էներգիայի պատճառով քիչ էր մնում կռվեր հետս:

— Նա ինքն է խելագարը,— բարկացավ Արգամը:— Իմ ռոբոտն էլ է ցնդած: Ռոբոտից ավելին չի էլ կարելի սպասել: Դրանք բոլորն էլ մի քիչ պակաս են...

— Ընդհանրապես տափակ արարածներ են,— եզրակացրեց աղջիկը:

— Դա նրանից է, որ երբեք երեխա չեն եղել,— իր հայտնագործությունը հիշելով, ոգևորվեց Արգամը:— Իսկ բոլոր մարդիկ մի ժամանակ երեխա են եղել: Նոր տարին մարդկանց մեջ միշտ արթնացնում է իրենց մանկությունը:

— Խե՜ղճ մեքենաներ,— ասաց Լիլիթը:— Նրանք երբեք չեն իմանա, թե ինչեր է թաքցնում իր մեջ Տոնածառի գույնզգույն խաղալիքների փայլը...

— Եվ Նոր տարվա սպասումը...

— Եվ ժամացույցի տասներկու հարվածները...

Նրանք շարունակում էին խոսել, իսկ ժամանակը հանդարտորեն դեպի կեսգիշեր էր տանում: Կեսգիշերից մի քանի րոպե պակաս, բոլոր պայծառ լույսերն ան–

*ջատվեցին ու մնաց Տոնածառի լամպիկների գույնզգույն կիսախավարը:*

*— Ինձ թվում է, թե քիչ հետո հյուրերը կսկսեն հավաքվել,— կիսաձայն ասաց Լիլիթը, նայելով սեղանին:— Եվ միշտ վախենում եմ, որ ինչ-որ բան մոռացել եմ սեղանին դնել:*

*— Ոչինչ չես մոռացել,— հանգստացրեց Արգամը:— Դու հրաշալի սեղան ես բացել:*

*— Դի՜նգ-դա՜նգ...— ժամացույցի ձայնով սկսեցին ղողանջել ծավալացույցի բարձրախոսները: Լիլիթն ու Արգամը ոտքի ելան Նոր տարին դիմավորելու: Ասես առաջին անգամ էին դիմավորում, երկյուղածությամբ ու խորհրդավոր սպասումով:*

*— Շնորհավո՜ր Նոր տարին, Լիլի՛թ,— ասաց Արգամը:— Թող կատարվեն քո բոլոր երազանքները:*

*— Շնորհավո՜ր Նոր տարին, Արգա՛մ,— շշնջաց աղջիկը:— Թող այն երջանիկ տարի լինի քեզ համար:*

*Որոշ ժամանակ նրանք նորից լուռ նստած էին:*

*Իսկ մի քանի րոպե անց էկրանը սկսեց աղոտանալ: Նրանց նավերն արդեն իրարից շատ էին հեռացել, և կապն ավելի ու ավելի էր թուլանում: Նրանք երկուսն էլ նետվեցին դեպի էկրանը:*

*— Արգա՛մ,— ձայնեց Լիլիթը:— Մենք արդեն հեռանում ենք... Բայց ինչո՞ւ այդքան շուտ, Արգա՛մ...*

*Նրա ձայնը հեռվից էր գալիս, շա՜տ հեռվից:*

*— Լիլի՜թ...— բղավեց Արգամը:— Լիլի՛թ, լսո՞ւմ ես: Ես անպայման կգտնեմ քեզ: Լսո՞ւմ ես...*

*Պատասխան չեղավ: Նրանք երկուսով կանգնել էին էկրանի դիմաց, բայց իրար չէին լսում: Աղջկա շուրթերն ինչ-որ բան էին շշնջում: Հետո նա ձեռքով արեց, և էկրանին նրա փոխարեն անթիվ գունագծեր ու կետեր հայտնվեցին, որոնք երաժշտություն էին հյուսում...*

*— Նրա նավից այլևս հաղորդում չի լինի,— լսեց Արգամը ռոբոտի ձայնը:— Նա արդեն շատ հեռու է:*

*— Գիտեմ,— ասաց Արգամը:*

*— Մենք պետք է վերադառնանք կրոյական տարածություն,— հիշեցրեց մեքենան:— Նորից հսկայական քանակությամբ էներգիա պետք է ծախսվի...*

*— Կորչի՛ր քո էներգիայի հետ...— պայրացավ Արգամը:*

*Նրանց նավը պատրաստվում էր դուրս գալ եռաչափ տարածությունից, և Արգամը մտածում էր, որ հեռու մի-տեղ կրոյական տարածություն մտնելու է պատրաստվում նաև Լիլիթի նավը:*

## ՊԱՏԱՆԻ ՖԻԶԻԿՈՍՆԵՐԻ ԴՊՐՈՑԸ

**Աշտարակի շրջանի գիտա-հետազոտական ինստիտուտների մի խումբ երիտասարդ մասնագետներ երկու տարի առաջ կազմակերպեցին պատանի ֆիզիկոսների և մաթեմատիկոսների դպրոց: Դպրոցի պարապմունքներին հաճախող բարձր դասարանցիները գիտաշխատողների օգնությամբ դժվարին խնդիրներ ու վարժություններ էին լուծում, ծանոթանում ժամանակակից ֆիզիկայի նորություններին, էքսկուրսիաների էին գնում Բյուրականի աստղադիտարան, օպտիկամեխանիկական լաբորատորիա, ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտ: Մի տեղ հսկայական հեռադիտակներով հետևում էին հեռավոր աստղերին ու համաստեղություններին, այլ տեղ ծանոթանում էին օպտիկական սարքերին ու հարմարանքներին, իսկ ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտում ուսումնասիրում ու ականատես էին լինում բյուրեղների աճին:**

**Դպրոցի աշխատանքները մեծ օգուտ տվեցին հատկապես ավարտական դասարանների աշակերտներին: Անցյալ ուսումնական տարում նրանցից յոթը ընդունվեցին տարբեր բարձրագույն ուսումնական հաստատություններ:**

## ԴԱՍԸ ՎԱՐՈՒՄ ԷԻՆ ԲԱՐՁՐ ԴԱՍԱՐԱՆՑԻՆԵՐԸ

Երևանի № 44 դպրոցի դահլիճը նորից մարդաշատ էր: Արձագանքելով ՍՄԿԿ 25-րդ համագումարի որոշումներին, դպրոցում անցկացվում էր Լենինյան դաս՝ սովորել, աշխատել, պայքարել լենինաբար նշանաբանով: Դասը վարող Էդիկը, Միհրանը, Շաքեն, Հովիկը, Նինան ու մյուս բարձր դասարանցիները ունկնդիրներին պատմեցին լենինյան կուսակցության անցած դժվարին ճանապարհի, հերոսական գործերի, աշխարհում առաջին սոցիալիստական երկրի նվաճումների, ինչպես նաև իրենց անելիքների ու խնդիրների մասին:

Յուրաքանչյուր թեմայից հետո դպրոցական երգչախումբը և առաջին դասարանցիներից կազմված պարի խումբը հանդես էին գալիս հետաքրքիր համարներով:



# ՆԱԽԵՐԳ ՀԱՎԵՐԺՈՒԹՅԱՆ

*1924 թվականին կուսակցության Կենտրոնական կոմիտեն հանձնարարեց հնագույն հեղափոխական, պետական գործիչ Լեոնիդ Բորիսովիչ Կրասինին ղեկավարելու առաջնորդի հիշատակը հավերժացնելու համար կազմված հանձնաժողովի աշխատանքները: Փետրվարին «Պրավդա»-ում լույս տեսավ Կրասինի հոդվածը, որտեղ նա ժողովրդի քննարկմանն էր ներկայացնում մայրաքաղաքում Լենինի հիշատակը հավերժացնող կոթողի նախագիծը: Այն դժվարին տարիների համար դա մի ֆանտաստիկ նախագիծ էր, նախատեսված տասնամյակների համար: Ահա այդ մասին է պատմվում ստորև:*

## ԴԱՐՁԱՎ ՀԻԱՍՔԱՆՉ ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ժողովրդի սրտում Լենինը անմահ է: Նրա հիշատակը մեր ժողովուրդը սրբությամբ է պահպանում: Այն դաժան ձմեռային օրը՝ հունվարի 21-ին կառավարությունը որոշում ընդունեց դամբարան կառուցել, իսկ կազմակերպչական աշխատանքները հանձնարարեց Լ. Բ. Կրասինին: Կրասինի կենդանության օրոք, Շչուսևի նախագծով, կառուցվեց երկու դամբարան, երկուսն էլ փայտյա: Մեկը կանգուն մնաց ընդամենը երեք ամիս, մյուսը՝ հինգ տարի: Սակայն հարկավոր էր դամբարան «հավերժության համար», ինչպես գրում էր Կրասինը: Ակադեմիկոս Շչուսևը պահպանելով նախորդ երկու տարբերակների ճարտարապետական ոճը, աշխատեց դամբարանը դարձնել ավելի հանդիսավոր, արժանի առաջնորդի կերպարի վեհության:

Դամբարանի կառուցման համար բերվեցին արժեքավոր և ազնիվ նյութեր՝ մարմար, ծիրանաքար, գրանիտ, լաբրադոր, յաբրադորաքոր, գաբրոնիտ: Այդ բոլորը Մոսկվա էին բերվում երկրի տարբեր ծայրերից: Ավելի պատասխանատու աշխատանք քարտաշ կառուցողների համար դեռևս չէր եղել: Արտասահմանյան, ինչպես և հայրենական շատ մասնագետներ գտնում էին, որ դամբարանի կառուցումը կտևի 4—5 տարի, բայց սովետական շինարարները այն ավարտեցին աներևակայելի արագությամբ՝ 16 ամսում: Դամբարանն, անշուշտ, համաշխարհային ճարտարապետության լավագույն կոթողներից է:

Կարմիր հրապարակը Ռուսաստանի սիրտն է, տոների ու հանդիսությունների օրերին, խոր վշտի պահերին այստեղ ենք հավաքվում: Մեր ժողովրդի համար դա նվիրական ավանդույթ է դարձել: Տիեզերագնացները տիեզերք թռչելուց առաջ գալիս են Կարմիր հրապարակ, Կարմիր հրապարակ են գալիս տիեզերքից վերադառնալիս… Պատանի պիոներները այստեղ հանդիսավոր երդվում են հավատարիմ լինել Լենինի գործին: Անընդհատ դեպի դամբարան է ձգվում մարդկանց գետը:

Վերջերս Մոսկվայում Լենինի երկու հուշարձան բացվեց՝ մեկը Կրեմլում՝ լիտվացի քանդակագործ Պինչուկի նախագծով, մյուսը, որ կատարել է լիտվացի քանդակագործ Գ. Իոկուբոնիսը, գտնվում է Իլյիչի ուղեկալում: Այժմ մեր երկրի մի շարք խոշորագույն քանդակագործներից կազմված խումբը աշխատում է այն հուշարձանի նախագծի վրա, որը դրվելու է Լենինյան բլուրներում: Դա կլինի մի հոյակերտ հուշարձան, որպիսին պատկերացնում էր Կրասինը: Լենինյան բլուրներում Կրասինը երազում էր տեսնել ուսումնական հաստատություններ, ինչպես հին Հունաստանի դպրոցներն էին: Այն ժամանակ դա ֆանտաստիկ պլան էր, իսկ երեսուն տարի հետո Լենինյան բլուրները կերպարանափոխվեցին: Այստեղ ձգվել են Մոսկվայի պետական համալսարանի, աշխարհի խոշորագույն համալսարանի մասնաշենքերը: Ուսանողական քաղաքի տարածությունը հավասար է 50 հազար բնակիչ ունեցող քաղաքի տարածությանը: Համալսարանի բարձրահարկ շենքից բացվում է մի հիանալի տեսարան՝ Լենինի անվան ստադիոնը Լուժնիկիում: Իսկ այն ապագա պողոտան, որը նշել է Կրասինը, այժմ Մոսկվայի ամենագեղեցիկ պողոտաներից մեկն է և կոչվում է նույնպես Լենինի անունով, ինչպես և Մոսկվա գետի շրջակայքի գեղատեսիլ շրջանը: Կրասինի նշումները, որոնք ժամանակին ֆանտաստիկ էին թվում, այսօր դարձել են հիասքանչ իրականություն:

# ՄԻ ԵՐԿԱՐ, ՄԻ ԿԱՐՃ ԱՐՁԱԿՈՒՐԴ

(ՎԻՊԱԿ)

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ԱՌԱՋԻ՛Ն ՓՈՐՁՈՒԹՅՈՒ՛Ն

Կատյայի շուրթերը սարսափից կապտել էին։ Նա այլևս չէր կարողանում գոռալ։ Ասենք, ի՞նչ միտք ուներ գոռալը։ Շուրջը ոչ ոք չկար։ Միայն հորանն էր սովորականի նման հևում և հսկա վիշապի նման երկինք արտաշնչում գաղջ գոլորշի։

— Ի՞նչ է պատահել,— հևալով կանգ առան տղաները ու իրենք էլ վախեցած սսկվեցին։ Ընդերքից խուլ դղրդոց էր լսվում։ Դղրդո՞ց էր, թե՞ մարդկային անկապ ձայներ։

— Ինձ թվում է ներքևից օգնություն են խնդրում,— շշնջաց Վիտյան։

— Դե՛, իհարկե խնդրում են,— ձեռքերը իրար խփեց Կատյան,— ի՞նչ եք շշկլել, կանգնել, չե՞ք լսում...

— Գնամ լուր տամ,— դեպի բանավան շրջվեց Վիտյան,— ես իսկույն... ես վազքից երրորդ կարգ ունեմ...

— Մինչև գնաս-գաս, այնտեղ ոչ մեկը կենդանի չի մնա,— նրա ձեռքը բռնեց Նարեկը,— եկեք իմ ետևից...

Երեխաները նետվեցին հորանի մեխանիկական բաժանմունքը, որտեղ հարյուրավոր մետաղե պարաններ, ատամնանիվներ ու խոշոր բռնակներ կային։

— Վտանգի ժամանակ, այ, սրանով են վեր հանում ներքևում մնացածներին,— ձեռքը դնելով մի խոշոր բռնակի, ասաց Նարեկը,— պետք է պտտել...

— Իսկ դու հաստա՞տ գիտես,— կասկածեց Վիտյան։

— Գիտեմ, որ ասում եմ։ Ի՞նչ ես շշմել, արի օգնի՛ր։

Պարզվեց, որ երկու հոգով այն պտտելն անհնար է։ Կատյան նայում էր տղաների անկոր ճիգերին ու հուսահատությունից կծոտում մատերը։

— Իսկ դու ի՞նչ ես քեզ կոտրում,— վայրացած նրան դարձավ Նարեկը,— թռի՛ր բանավան, իմա՛ց տուր...

Կատյան չէր ուզում տղաներին մենակ թողնել, իրեն թվում էր, թե ինքն այստեղ ինչ-որ բան, համենայն դեպս, կարող է անել։ Բայց նայելով նրանց հուսահատ դեմքերին, դուրս նետվեց։ Վիտյան ու Նարեկը լողում էին քրտինքի մեջ։ Վիտյայի ձեռքերի մեջ բշտիկներ գոյացան։ Բայց ի՞նչ օգուտ։ Բռնակը տեղից չէր շարժվում։ Իսկ այնտեղ՝ ներքևում... Սարսափելի էր նույնիսկ մտածել։

— Գուցե մենք ինչ-որ բան ճիշտ չե՞նք անում,— տրտնջաց Վիտյան,— գուցե դու պարզապես ձևը՞ չգիտես։

— Հեռո՛ւ գնա... Հետո էլ կասես տղամա՞րդ եմ...

Նարեկը վերև նետվեց և ամբողջ մարմնով ընկավ բռնակի վրա։ Մետաղյա ատամնանիվը ճռընչաց ու միանգամից այնպիսի թափով պտտվեց, որ Նարեկը հազիվ պահեց հավասարակշռությունը։ Բայց լավն այն էր, որ ձևը գտան։ Տղաները հերթով կախվում էին բռնակից, և նրանց ծանրության տակ բռնակը ճռնչալով պտտվում էր, ու գնալով արագանում էին պտույտները։ Բայց որքան վերելակը բարձրանում էր, այնքան Նարեկի սիրտը խփում էր արագ ու անհամաչափ։ Կարծես ուր որ է շունչը կտրվելու էր։ Իսկ եթե վերելակի գալուց հետո պարզվի, որ այնտեղ ոչ ոք... որ բոլորը վաղուց...

Երբ հորատանցողները բանավանից օգնության հասան, վերելակն արդեն դուրս էր եկել։ Նրանից ժանգագույն ջուր էր չռռում։ Բոլորը շրջապատեցին մետաղե քառակուսի տուփն ու հերթով դուրս էին հանում թունելագործներին։ Թունելագործները ամբողջովին մերկ էին, ցեխի ու ջրի մեջ։ Նարեկի հոր՝ ընկեր Մանուկյանի ուսից արյուն էր ծորում։ Բայց նա ուշադրություն չէր դարձնում դրան։

— Ապրե՛ք, տղե՛րք,— դարձավ նա հորատանցողներին,— մի քանի րոպե էլ որ ուշանայիք...

— Մենք ի՞նչ, ընկե՛ր Մանուկյան,— աղմկեցին նրանք,— մենք հենց նոր տեղ հասանք, էս երեխեքն արդեն ամեն ինչ արել էին, այնպես որ... Նարեկն ու Վիտյան կանգնել էին անկյունում՝ ու երկուսն էլ շառագունել, հայտնի չէ հուզմունքի՞ց, հոգնությունի՞ց,

Սկիզբը՝ 1976 թ. № 12։

թե՛ նրանից, որ բոլորն իրենց են նայում: Ընկեր Մանուկյանը մոտեցավ, իր հաղթ բազուկներով օդ բարձրացրեց Վիտյային, հետո Նարեկին, ու Նարեկն առաջին անգամ զգաց, թե ինչպես են դողում հոր ձեռքերը: Ներքևում, ըստ երևույթին, իրոք վատ բան էր պատահել, որովհետև մեկ րոպե անց մեծերը մոռացան իրենց ու տարվեցին խոսակցությամբ:

— Ախր ամեն ինչ միանգամից եղավ,— թույլ տալով, որ վերքը կապեն, պատմում էր ընկեր Մանուկյանը,— սկզբում տեղանքը կարծես լավ էր, մեկ էլ ընդերքը թուլացավ, ամեն անկյունից սկսեց հեղեղի պես ջուր հորդել: Մինչ ուշքի կգայինք, վերից մի մեծ կտոր ապար ընկավ և կտրտեց էլեկտրական լարերը: Խարխափելով հազիվ կարողացանք դեպի ելքը շարժվել: Բայց ջուրը մեզնից արագ էր շարժվում... Հեռախոսալարերն էլ էին շարքից դուրս եկել... Լավ է, ՛տղաները չհուսահատվեցին: Ամեն մեկը մի կտոր երկաթ վերցրած, խփում էր վագոններին, գոռում, աղաղակում, մեկ էլ ինչ-որ մեկը նկատեց.

— Տղե՛րք, վերելակը շարժվում է, լցվեք...

Նարեկը գլուխը բարձրացրեց ու գաղտագողի նայեց Վիտյային: Երկուսի դեմքով էլ ժպիտի պես բան սահեց: Այսքան մարդու կյանք իրենք են փրկել:

Նարեկը լսում էր հորը և նոր հասկանում, թե ինչո՞ւ նա շաբաթներով, երբեմն նույնիսկ ամիսներով Երևան չի գալիս, իրեն տեսնելու: Իրենց շենքի բոլոր տղաները կիրակի ու տոն օրերը հայրիկների հետ զբոսանքի են գնում, ամառները մեկնում ծովափ ու հեռավոր հանրապետությունները, իսկ ինքը անընդհատ մնում է մենակ՝ մենակ իր ծեր պապի հետ:

Վիտյան էլ էր պապի հետ մենակ: Բայց նա դրանից չէր դժգոհում, ընդհակառակը պապի հետ ավելի հետաքրքիր էր: Ամռանը միասին գնում էին ձուկ որսալու, իսկ ձմռանը պառկում էին տաք վառարանի վրա, և պապը պատմում էր անցած-գնացած պատկերվա տոների մասին, երբ եկեղեցու հրապարակը լցվում էր գույնզգույն ջորեր հագած աղջիկներով, երաժշտությամբ ու ծաղրածուներով: Վիտյան իր կյանքից գոհ էր, դժգոհ էր պապը: Նա անընդհատ փնթփնթում էր Վիտյայի ծնողների հասցեին, որ իրենց ծննդավայրը լքել են հեռու-հեռուները գնացել փող աշխատելու:

Եթե պապը հիմա այստեղ լիներ, կհամոզվեր, որ ո՛չ հայրիկը և ո՛չ էլ մայրիկը միայն փողի համար չէ, որ հասել են այս լեռները: Միայն փողի համար մարդն իր կյանքը ամեն օր, օրը մի քանի անգամ վտանգի չի ենթարկի:

— Ընկե՛ր Մանուկյան, պետք է շտապ հոսանքը միացնել և պոմպերը գործի դնել, ջուրը թունելախորշից դուրս հանել: Թե չէ վաղը չենք կարողանա աշխատել:



Նարեկի հայրը բարձրահասակ էր, հաղթանդամ: Հաստ բեղերը դեմքին մռայլ և նույնիսկ դաժան արտահայտություն էին տալիս: Նա մյուս թունելագործներից ավելի ջահել էր, բայց բանավանում բոլորը հարգանքով լսում էին նրան: Նա Արփայից Սևան գետնի տակով ավելի երկար ճանապարհ էր անցել, քան այստեղ գտնվողներից որևէ մեկը: Երկար ժամանակ նա Վիտյայի հորը չէր պատասխանում:

— Ես վախենում եմ,— թունելագործների սպասողական դեմքերին նայելով՝ ի վերջո ասաց նա,— որ վաղվանից չենք կարողանա ներքև իջնել:

— Ինչո՞ւ,— անակնկալի եկան թունելագործները:

— Ես ձեզ հասկանում եմ,— հնարավորին չափ մեղմ շարունակեց նա,— բոլորդ էլ ուզում եք շուտ վերջացնել թունելն ու ազատվել այս լեռներից: Կարծում եք, ես չե՞մ ուզում, բայց...— նա դեմքը ծամածռեց, ձեռքն արագ մոտեցրեց վիրավոր ուսին, երևի ցավում էր:— Ես այսքան տարի է թունել եմ փորում, գիտեմ: Միշտ ջրերի հոսքին հաջորդում են ստորգետնյա թունավոր գազերը: Իսկ դա ջրից սարսափելի է:

Թունելագործները միմյանց ընդհատելով վրա տվին:

— Գուցե դեռ վաղ է նման ենթադրություններ անել, ընկե՞ր Մանուկյան...

— Ո՛չ,— համարյա գոռաց ընկեր Մանուկյանը,—

---

## ԲՈՒՔԸ

ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ

Բուքը շրջում է ճերմակ,
Ճերմա՜կ դաշտերով,
Արշավում է դեպի գյուղ
Մեծ-մեծ վաշտերով:

Բակում ասես եռնակ է
Հանում իր ծոցից,
Սակայն հեռու է թռչում
Ծան գոմոցից:

Պատուհանն է հետո նա
Ճանկռում ու ծաղկում,
Սակայն այնտեղ եղյամե
Ծաղիկն է ծաղկում:

Զայրանում է, սպառնում
Ձյան նոր տարափով,
Հետո փախչում է պարտված
Իր եկած ճամփով:

Նկ. ՅՈՒԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ

## ՔԱՂԱՔՈՒՄ Ի՞ՆՉ ՁՄԵՌ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Քաղաքում ի՞նչ ձմեռ՝
Մառախուղից բացի...
Գնանք լեռները մեր,
Լանջերն Արագածի:

Այնտեղ ձյունը ճերմա՜կ,
Այնտեղ ձյունը մաքո՜ւր,
Որպես փափուկ վերմակ՝
Լեռնաշխարհն է ծածկում:

Այնտեղ ձյունի շեղջե՜ր,
Օդը՝ սառն ու կապույտ,
Դու կարող ես շնչել
Ձյան ու արևի բույր:

digitised by A.R.A.R.@

ոչ մեկդ էլ չեք իջնի: Հասկացե՛ք, ես Սևանի մասին ձեզնից շատ եմ մտածում, բայց...

Տեղամասի պետը կտրուկ շրջվեց, որ նշանակում էր, թե բոլոր խոսակցությունները ավելորդ են:

— Ի՞նչ պիտի լինի սրա վերջը,— քար լռության մեջ լսվեց հորատանցողներից մեկի ձայնը:

— Ինչքա՞ն պիտի տանջվենք էս կամակոր լեռների ձեռքին,— արձագանքեց մի ուրիշը:

Մյուսները անորոշ թոթվեցին ուսերը: Հետո լուռ քայլեցին ընկեր Մանուկյանի ետևից: Յուրաքանչյուրի դեմքին կար նույն մտահոգությունը՝ ինչ է լինելու վաղը յոթ հարյուր մետր գետնի տակ: Ինչ է սպասում իրենց այնտեղ: Բանվորների հետ, նրանց պես լուռ ու մտահոգ քայլում էին Նարեկն ու Վիտյան (Կատյան ինչ-որ չէր երևում):

Մինչ նրանք գլխիկոր քայլում էին, մեկը Նարեկի գրպանը թղթի մի կտոր խոթեց ու աներևութացավ: Նարեկը կարմացած նայեց շուրջն ու գրպանից հանեց թղթի կտորը: Այնտեղ ծուռումուռ տառերով, արագ-արագ գրված էր.

«Այս գիշեր, ժամը իննին, եղիր լքված խրճիթում: Բռնվելու դեպքում թուղթը ծամիր ու կուլ տուր: Միստր Իքս»:

Նարեկը նորից կարմացած նայեց շուրջը, ապա Վիտյային, ընկերոջ դեմքից հասկացավ, որ նա էլ է նույն բովանդակությամբ երկտող ստացել:

(Շարունակելի)




ԷԴՈՒԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

(Մի աղջկա օրագրից)

Դավիթը վերջերս է մեր դասարանը տեղափոխվել: Լուռ, տխուր տղա է: Բոյն էլ ոնց որ բարդի: Դրանից էլ շորերը կարճ են վրան, հին: Ասում են, հայր չունի: Վերջերս է մահացել:

Դավիթը մոտեցավ իր նստարանին ու հանեց պայուսակը:

— Ինչո՞ւ ես այդպես նայում,— ասացի ես:

— Ինչպե՞ս եմ նայում,— կարմացավ նա:

— Այդպես,— պնդեցի ես:

— Չես ուզում, չեմ նայի ոչ մի տեսակ:

Եվ շրջվեց, որ գնա:

— Սպասի՛ր,— գրեթե ճչացի ես:— Ի՞նչ եղավ: Բան էի ուզում ասել:

— Ասա՛:

— Հիմա չէ, դասերից հետո, լա՞վ:

Դասերից հետո դուրս եկա Դավիթի հետ: Վարդանը նկատեց, ծիծաղեց, կանչեց մյուսներին: Վարդանից չէի սպասում: Բերանը բացած, ծիծաղում էր:

Լավ է, Դավիթը չնկատեց: Կնեղանար: Նա ինչ-որ բան էր պատմում: Կարծեմ ինչ-որ կինոնկարից: Ուրախ էր, ոգևորված: Հետո գրքերի մասին խոսեց:

— Կարդալ շատ եմ սիրում,— ասաց նա:— Բայց ամենից շատ՝ արկածային: Իսկ դո՞ւ: Դու ի՞նչ ես սիրում...

— Ե՞ս,— կրկնեցի ու չիմացա ինչ ասեմ:— Ես... Չգիտեմ: Երևի, սիրո մասին:

— «Դինգո վայրի շունը կամ պատմվածք առաջին սիրո մասին» կարդացե՞լ ես: Լավ գիրք է:

— Չէ,— ասացի,— սիրում եմ միայն սիրո մասին: Շունը այստեղ ի՞նչ գործ ունի, այն էլ՝ վայրի: Ա՛յ, օրինակ «Ռոմեո և Ջուլիետը»:

— Կարդացե՞լ ես...

— Նայել եմ:

— Է՛, նայել ես,— դեմքը ծամածռեց Դավիթը,— կարդա՛, որ բան հասկանաս...

— Պե՞տքս է,— ասացի,— դու էլ քո քարոզով...

Ես, ճիշտն ասած, կարդալ քիչ եմ սիրում: Դժվար եմ սկսում: Բայց հո Դավիթի մոտ ամոթով չէի մնալու:

Հենց նրանից բաժանվեցի, վազեցի գրադարան: Վերցրեցի հենց այդ գիրքը՝ «Վայրի շունը»: Կարդացի գիշերը, մի թափով: Իսկ առավոտյան Դավիթին ասացի.

— Երեկ ի՞նչ գրքի անուն ասացիր:

— «Դինգո վայրի շունը կամ պատմվածք առաջին սիրո մասին»:

— Ա՛, դա՞: Ես վաղուց էի կարդացել: Մոռացել էի:

— Այս գիշեր ես կարդացել...

— Ո՞վ ասաց: Ինչի՞ց իմացար:

— Աչքերդ ասացին...

Եվ նա վերևից ներքև, ժպտադեմ նայեց ուղիղ աչքերիս մեջ:

«Չէ,— մտածեցի ես,— խելոք տղա է: Ու սիրուն է: Ինչ անենք, թե Վարդանի նման լավ չի հագնում: Ինչ անենք»:

Այսպես սկսվեց իմ մտերմությունը: Հաճախ ինձ թվում էր, թե մենք ոչ թե նոր ենք ընկերացել, այլ

միշտ էլ այդպես ենք եղել: Ինձ համար միշտ նոր ու հետաքրքիր գրքեր է բերում: Երբ իմացավ նկարել եմ սիրում ու լուծիչներ չունեմ, ճարեց:

Բայց մի դեպք եղավ արանից երկու օր առաջ և քիչ մնաց ամեն ինչ խառներ: Մեղավորը ես էի: Կամ գուցե մորս ասած այն անցողիկ հասակը:

Կարինեի գրիչը կորավ: Ես ու Դավիթը այդ գրիչը տեսանք Հովիկի մոտ: Կարինեն շատ լաց եղավ, և ես նրան թաքուն ասացի.

— Հովիկն է տարել:

— Ո՞վ տեսավ, դո՞ւ,— հարցրեց Կարինեն:

— Չէ...— վախեցա ես, կմկմացի:— Ես չեմ... Ես չեմ տեսել, Դավիթն է տեսել:

Ասացի ու զգացի, որ վատ բան արեցի: Բայց արդեն ուշ էր:

Մեծ պատմություն սկսվեց: Դավիթին կանչեցին ուսուցչանոց: Պարզ է, որ նա չէր ասի, թե տեսել է: Այդպես էլ եղավ: Ստիպված ինձ էլ կանչեցին: Երբ մարդ մի սուտ է ասում, մյուսն էլ պոչից է գալիս:

Ի՞նչ կարող էի անել: Ես, իհարկե, սուտ չէի խոսել: Բայց Դավիթին անհարմար դրության մեջ էի դրել: Ու քանի որ սկսել էի, շարունակեցի: Կանգնեցի Դավիթի դեմ և բոլորի ներկայությամբ ասացի, որ նա է տեսել: Դավիթն է տեսել, որ Հովիկը տարել է Կարինեի գրիչը:

Պատկերացնո՞ւմ եք, թե ի՞նչ եղավ: Դավիթը քարացած ինձ նայեց: Թվաց, թե պիտի ասի. «Դու չե՞ս տեսել»: Բայց չասաց: Դարձավ ընկեր Բարխուդարյանին և գլուխը կախելով ասաց, որ այդպես է, հետո էլ ավելացրեց.

— Մոռացել էի... Ամաչում էի: Տեսել եմ...

Ինձ ուսուցչանոցից ուղղակի դուրս գցեցի: Ասես խեղդվում էի: Շունչս կտրվում էր: Հուսահատվել էի: Ինքս իմ աչքում ընկել: Վախկոտությունի՞ց, թե՞ ուրիշի առաջ լավ մարդ լինելուց, ընկերոջս գլխին ինչ խաղ խաղացի:

Ամբողջ օրը լաց եղա: Ես, որ լաց լինել չգիտեի: Մայրս նկատեց: Ես էլ չդիմացա: Պատմեցի ամեն ինչ: Նա լուռ լսում էր: Հետո գլուխը օրորեց.

— Լավ է, որ մեղքդ հասկանում ես: Լավ է, որ ինքդ քեզ ես մեղադրում:

Դավիթը ինձ հետ էլ չի խոսի, չէ՞, մա՞:

— Ի՞նչ իմանամ... Գուցե: Միթե չես հասկանում, թե ինչ ես անում:

Երեկոյան ինքը՝ Դավիթը ինձ կանչ տվեց: Պատկերացնո՞ւմ եք, ինքը: Մի գիրք էի խոստացել վաղը դպրոց տանել: Հիշեցրեց, որ չմոռանամ: Իսկ այն դեպքի մասին ոչինչ չհիշեցրեց: Ասես բան էլ չէր պատահել: Ասես երազ էր: Ես չդիմացա:

— Դավի՛թ,— ասացի,— դու ինձ կներե՞ս: Միթե ես վախկոտի մեկն եմ:

— Ի՞նչ է եղել որ,— ասաց նա և, երևի, ժպտաց: Գոնե ինձ այդպես թվաց: Ու այդ ժպիտից մի քիչ հանգստացա:

— Որ ասացի, թե դու...

— Դե դու սխալվեցիր, իսկ սխալը կարելի է ուղղել:

— Անցողիկ հասակն է մեղավոր: Մայրիկս էլ նույնն է ասում: Այդ հասակը... Գիտե՞ս...

— Սուտ է,— ասաց Դավիթը,— հնարովի բան է: Ի՞նչ անցողիկ հասակ: Բոլոր հասակներն էլ անցողիկ են: Վե՛րջ տուր: Միայն իսկական ընկերությունը անցողիկ չէ: Հասկացա՞ր...

— Ուրեմն ներո՞ւմ ես,— պնդեցի ես,— հա՞:

— Վաղը գիրքը բե՛ր, չմոռանաս,— ասաց Դավիթը,— հասկացա՞ր:

Եվ լսափողը կախեց:

Ես խոր շունչ քաշեցի: Ինչ լավ է: Վերջապես անցավ այս անցողիկը: Գուցե, իսկապես չէր էլ եղել: Մայրիկիս հնարածն էր: Լավն այն է, որ աշխարհում ընկերություն կա, իսկական ընկերություն, որ Դավիթը կա...

Ես սովորում եմ յոթերորդ դասարանում: Դա, իհարկե, կարևոր չէ: Կարևոր չէ, թե ով եմ: Մեր քաղաքում որքան յոթերորդ դասարան կա, երևի այդքան էլ ինձ նման աղջիկներ, որոնք հաճախ են սխալվում: Բայց մի բան կա, դա ես ձեզ թաքուն եմ ասում, մի բան էլ կա, որը գուցե ոչ ոք չգիտի: Եվ չի էլ իմանա: Դա այն է, որ ես հիմա մեր քաղաքի, չէ, ի՞նչ եմ ասում, աշխարհի ամենաերջանիկ աղջիկն եմ:

## ՃԵՐՄԱԿ ԳՈՒԼՊԱՆԵՐ

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Ճերմակ ձյուները թեթև ու անհոգ
Իջնում, ծածկում են հին խրճիթը մեր,
Խրճիթում մայրս՝ ճերմակ իրիկուն,
Նստած գործում է տաք-տաք գուլպաներ:

Գործում է թեթև ու անիրական,
Արևի շող է խառնում թելերին
Ու հագցնում է նա մտքերի մեջ
Իր թոռնիկների մրսած ոտքերին:

Ճերմակ ու փափուկ գուլպաները տաք
Հյուսված են ճերմակ փաթիլներից ձյան,
Որոնք պահում են իրենց ցուրտ գրկում
Կանաչ երազներն հեռավոր գարնան:

## Ե Ր Բ

Այս փոքրիկ գրույցի նպատակն է մեկ անգամ ևս հիշեցնել, որ ժամանակին չուղղված սխալը հետագայում կարող է շատ հոգսերի պատճառ դառնալ, նույնիսկ, ճակատագրական լինել:

Այս ամենը ոչ թե սպառնալիք է, այլ խորհրդածելու և ճիշտ հետևությունների հանգելու առաջարկ: Զրույցին մասնակցում են մի խումբ աշակերտներ, այդ թվում նախկին և ներկա երկտարեցիներ:

Ա. Կ.-ի հետ մեծ դժվարությամբ հաջողվեց զրուցել: Նա անփույթ, մարտական տեսք ուներ և քայլելիս անընդհատ հրմշտում էր կողքից անցնողներին: Ահա թե ինչ կարողացանք իմանալ նրանից:

Ա. Կ.— Ոչ մի առարկայի հանդեպ առանձնահատուկ վերաբերմունք չունեմ: Դպրոց գնում եմ, որովհետև եթե չգնամ հայրս կծեծի:

չպատասխանելուց: Իբրև թե վրեժխնդրության ձև էր գտել ինձ համար: Հայտնի չէ ո՞ւր կհասցներ ինձ այդ «վրեժխնդրությունը» (ես արդեն երկտարեցի էի և թվում էր, թե երբեք չեմ ավարտի դպրոցը), եթե չլիներ մեր հարևան կաթվածահար թոշակառու մանկավարժը, որը ինձ շատ բարի խորհուրդներ տվեց: Ուսուցչին ես այդպես էլ չկարողացա սիրել, բայց նրա հանդեպ ունեցած իմ վերաբերմունքն այլևս չէր տարածվում առարկայի վրա: Օրերից մի օր, երբ արդեն ետևում էին մնացել ավարտական քննությունները, ես հայտնաբերեցի, որ քիմիան ամենահետաքրքիր առարկան է, և ես իմ հետագա կրթությունը շարունակելու եմ այդ ուղղությամբ:

**Իսկ ինչո՞ւ չեն սովորում ձեր ընկերները:**

Այս հարցով դիմեցինք մայրաքաղաքի Ա. Գրիբոյեդովի անվան № 41 և Լ. Արիսյանի անվան № 127 միջնակարգ դպրոցների 8-րդ դասարանի աշակերտներին:

## Ե Ր Կ Ա Ր Ո Ւ Մ Ե Ն

Բ. Գ.— Մենք նոր ենք տեղափոխվել Երևան: Այս տարի ստացանք բնակարան: Ծնողներս ծառայողներ են: Ես նրանց միակ երեխան եմ:

Անբավարար գնահատականներ եմ ստացել հայոց լեզվից և ռուսաց լեզվից: Ուսուցիչը թելադրում էր, ես գրում էի, թույլ տալով ահա այսպիսի սխալներ. «մարտատաշտում դարածվել էր արյան տակ հողը»: Եվ ստանում էի հերթական «վատը»:

Այժմ այլևս «վատեր» չեմ ստանում: Ամեն օր դասերին հատկացնում եմ մոտ երեք ժամ: Միջատների հավաքածու ունեմ, ազատ ժամերիս լրացնում, հարստացնում եմ հավաքածուս:

Կ. Հ.— Ծնողներս երկրաբաններ են: Երբ նրանք քաղաքում են լինում, ես «վատեր» գրեթե չեմ ստանում: Իսկ երբ արշավախմբի հետ մեկնում են (իսկ դա լինում է բավականին հաճախ), ես տեղափոխվում եմ տատիս մոտ և...

Երբ մեծանամ, ես էլ եմ երկրաբան դառնալու:

Հ. ԱՎԱԳՅԱՆ (համալսարանի քիմիական ֆակուլտետի շրջանավարտ, նախկին երկտարեցի)

— Մինչև ութերորդ դասարանը դպրոցի լավագույն աշակերտներից էի: Բայց ութերորդում, երբ մի պանցանքի համար քիմիայի ուսուցիչն ինձ ծանր խոսքեր ասաց և ծնողական ժողովի ժամանակ էլ ինձ խիստ պարսավեց, ես նրան սկսեցի համարել իմ համար առաջին թշնամին և չար հաճույք էի զգում դաս

ԲԱԲՈՒՋՅԱՆ ՆՎԱՐԴ.— Տարբեր պատճառներ է լինում: Օրինակ՝ տղաներից շատերը կարծում են, թե միայն բնածին ընդունակությամբ, առանց աշխատասիրության, հնարավոր է ինչ-որ բանի հասնել: Կամ, ասենք, մի հարվածային աշակերտի ուսուցիչը «վատ» է նշանակում դասը չպատասխանելու համար, այդ աշակերտը մեծ ողբերգություն է ապրում, անտարբեր դառնում թե՛ առարկայի և թե՛ տվյալ ուսուցչի նկատմամբ: Քառորդում հայտնվում է «3» գնահատականը: Իսկ որտեղ «3»-ը, այնտեղ էլ՝ «2»-ը:

ՍԵՐՈԲՅԱՆ ԳԵՎՈՐԳ — Մինչև 6-րդը եղել եմ գերազանցիկ: Հետո գնալով իջել է առաջադիմությունս և հիմա՝ 8-րդ դասարանում հարվածային եմ: Ես դասը սովորում եմ դասամիջոցներին: Տնային վարժությունները նույնպես գրում եմ դասարանում: Տանը քառորդ ժամից ավելի չեմ նստում գրքերի առաջ: Ու պատահական չէ, որ ոչինչ չգիտեմ անցած դասերից, ավելի ճիշտ, ոչինչ չեմ հիշում:

ՍԱՐԳՍՅԱՆ ՌԻՏԱ — Մի այսպիսի խոսակցություն տեղի ունեցավ իմ և դասընկերներիցս մեկի միջև, որը լավ սովորության, դարձյալ դասը չէր սովորել և «2» ստացավ:

— Ինչո՞ւ չես սովորել դասդ, — հարցրի նրան:

## Ս Տ Վ Ե Ր Ն Ե Ր Ը



*Ճանաչի՛ր և պահպանի՛ր հայրենի բնաշխարհի հազվագյուտ բույսերը:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՄԻՐՆՈՊՍԻՍ

Երկամյա բույս է: Դա նշանակում է, որ սերմը ծլելուց հետո սմիրնոպսիսը առատ թփակալում է մինչև ուշ աշուն, ձմեռում է այդ վիճակում, հաջորդ գարնանը ծաղկում է, սերմ է տալիս և աշնանը ավարտում է իր կյանքի մի լրիվ շրջանը:

Տերևները բույսի տարբեր մասերում տարբեր ձևի են: Արմատամերձ մասում դրանք փետրաձև են, ցողունների վրա՝ ամբողջական, ատամնաձև եզրերով:

Ծաղկաբույլերը հովանոցաձև են՝ դեղին կամ դեղնականաչավուն ծաղիկներով: Պտուղները դարչնամոխրագույն են: Առաջին անգամ այս բույսը հայտնաբերել և նկարագրել է բուսաբան Շիշկինը, Վայքում՝ 1947 թվականին:

Պատկանում է հովանոցազգիների ընտանիքին:

Հայկական սմիրնոպսիսը հանդիպում է Վայքում՝ Ազիզբեկովի և Եղեգնաձորի շրջաններում, հատկապես Վարդենիս գյուղի և Կոդուքս-Վանքի ու Թեքե-Դուրանի շրջակայքում: Աճում է չոր, քարքարոտ լանջերում և թփուտներում:

Սմիրնոպսիսը պատկանում է այն բույսերի թվին, որոնք տարածման աննշան սահմաններ ունեն: Դրանք երկրագնդի այլ շրջաններում բոլորովին չեն հանդիպում և ներկայումս գտնվում են ոչնչացման, իսպառ անհետացման եզրին: Ինքնին հասկանալի է, որ եթե այս բուսատեսակը չպահպանվի և վերանա մեր հանրապետությունից, ապա դրանով իսկ այն կանհետանա աշխարհի երեսից ընդհանրապես:

Ազիզբեկովի և Եղեգնաձորի շրջանների պիոներ-դպրոցականները պետք է լավ ճանաչեն այս բույսը (տես՝ նկարը) և ամեն կերպ նպաստեն դրա պահպանմանը:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

---

— Դասի չէի եկել:

— Ինչո՞ւ Թագուհուց չհարցրիր: Չէ՞ որ նա ձեր կողքի շենքում է ապրում:

— Հյուրեր ունեին, և ես ամաչեցի՝ անհանգստացնել:

— Զանգեիր ինձ կամ մեր մյուս ընկերներին:

— Երկու կոպեկանոց չունեի:

— Բայց դուք տանը հեռախոս ունեք:

— Հա՜... բլոկիրատո՜ր... մեր հարևանը ամբողջ օրը հեռախոսն զբաղեցնում է:

— Լավ, հո ոտքերդ էլ չէի՞ն զբաղեցրել...

— Ոտքե՞րս... Ոտքերս ինձ կինո տարան:



Ի՞նչ է հետևում այս հարցերից ու պատասխաններից, այն, որ երբ դու դարձել ես երկտարեցի, քաջություն ունեցիր և ընդունիր, որ մեղավոր ես նախ և առաջ ինքդ:

Հապա հիշի՛ր քո առաջին չլուծած խնդիրը: Հիշիր և ա՛յն առաջին դժվարությունը, որից ընկճվեցիր, այլ կերպ ասած՝ պարտվեցիր: Դա ամոթալի ու վտանգավոր պարտություն էր: Առաջին չլուծած խնդրին հաջորդեց երկրորդը, երրորդը: Հետո այն խնդիրը, որը քեզ երկտարեցի դարձրեց, քեզ ստիպեց վերադառնալ մի ամբողջ տարով ետ: Հիշի՞ր այդ առաջին չլուծածդ խնդիրը, ամբո՛ղջ կյանքում հիշիր:

Նաև իմացի՛ր, որ լավ պատմվածք կարդալն ու դժվար խնդիր լուծելը նույնքան հաճելի են, ինչքան հակառակորդի դարպասը հաղթական գոլ խփելը, բակի ամենաճարպիկն ու ուժեղը լինելն ու գեղեցիկ սանրվածք ունենալը:

ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ
ԲԱԳՐԱՏ ԱԼԵՔՅԱՆ

*Տասներորդ հնգամյակի երթուղիներում*

# ԵՐԲ ԵՎ ՈՐՏԵՂ ԿԳԵՐԻՇԽԵՆ ԷԼԵԿՏՐԱՄԵՔԵՆԱՆԵՐԸ

*Ատրգետնյա գնացքներ, տրոլեյբուս, տրամվայ,— ահա մոտ ապագայի երեք «մաքուր», անծուխ էլեկտրական փոխադրամիջոցները: Եվ, իհարկե, էլեկտրամեքենան: Կգա ժամանակ, երբ այն կիշխի ամենուր և ավտոմեքենաներին կարգելվի քաղաքի փողոցներով երթևեկել:*

*Էլեկտրամեքենան հորինվեց ավտոմեքենայի հետ գրեթե միաժամանակ՝ մոտ հարյուր տարի առաջ: Սակայն էլեկտրամեքենայի բախտը չբերեց. այն ժամանակ մեքենայի համար լավ «մարտկոցներ» չկային: Էլեկտրամեքենան կարող է շարժվել այնքան ժամանակ, քանի դեռ մարտկոցներում էներգիա կա: Մեկի փոխարեն կարելի է, անշուշտ, տասը մարտկոց տեղադրել, բայց այդ դեպքում մեքենայի վրա մարդկանց ու բեռների համար տեղ չի մնա: Եվ ստիպված կլինեն հաճախակի փոխել կուտակիչ մարտկոցները կամ էլ երկար սպասել, մինչև դրանց սնեն էլեկտրականությամբ: Իսկ այդ ընթացքում ավտոմեքենան կտեղափոխի բոլոր բեռները...*

*Բայց ահա մարտկոցները բարելավվեցին, և էլեկտրամեքենան սկսեց 80—100 կիլոմետր անցնել՝ առանց լիցքավորման:*

*1977 թվականին Մոսկվայում կաշխատեն երեք հարյուր էլեկտրամեքենա՝ առաջին փորձնական խումբը: Այժմ էլ Մոսկվայի փողոցներում կարելի է էլեկտրամեքենայի հանդիպել: Դրանք հավաքել են սովորական ավտոմեքենաների մասերից, միայն բենզինային շարժիչի փոխարեն էլեկտրաշարժիչ են տեղադրել, իսկ բենզինի բաքի փոխարեն՝ կուտակիչ մարտկոցներ:*

*Այդ «հագուստը» ծանր է էլեկտրամեքենայի համար: Նախագծողներն ու կոնստրուկտորները մեքենայի ավելի թեթև կառուցվածք են մշակում: Եթե դա ստացվի, ապա էլեկտրամեքենան առանց լրացուցիչ լիցքավորման կարող է ժամում անցնել 120 կիլոմետր:*

*Կոնստրուկտորները միաժամանակ աշխատում են մեքենայի վազքը մի 20—30 կիլոմետրով էլ ավելացնել: Վերջերս հայտնի դարձավ, որ Լենինգրադի տեխնոլոգիական ինստիտուտի մի խումբ գիտնականներ և ուսանողներ ստեղծել են նոր էլեկտրամեքենա: Փորձարկումների ժամանակ այն առանց լրացուցիչ լիցքավորման սուրում էր երեք հարյուր կիլոմետր տարածություն: Բայց կարող էր նաև հինգ հարյուր կիլոմետր անցնել:*

*Ցավն այն է, որ այդ մեքենայի մարտկոցը շատ թանկ է, բացի այդ, նորից լիցքավորել հնարավոր չէ, օգտագործելուց հետո, պետք է դեն նետել: Եվ նորից գիտնականները կքաղվեցին նախնական տիպի մարտկոցների կատարելագործմամբ, որոնք էժան են:*

*Այդ մարտկոցներում էներգիան առաջանում է կապարի և թթվի կամ մոխրաջրի և երկաթի միացությունից: Դեռևս Հայրենական մեծ պատերազմում մոխրաջրային մարտկոցները հիանալի դրսևորեցին իրենց Տ—34 տանկերի վրա: Այժմ դրանք կատարելագործվել են և թթվային. մարտկոցներից հինգ-վեց անգամ ավելի երկար են աշխատում, մեկ ու կես անգամ ավելի շատ էներգիա են տալիս: Դրանք կիրառվում են նաև արտադրության մեջ և լայն ճանաչում ունեն:*

*Մի խոսքով, քաղաքներում շուտով կհայտնվեն հարյուրավոր, հազարավոր էլեկտրամեքենաներ:*

*ՍԵՐԳԵՅ ԳՈՒՐՑԵՎ*

# ԷԼԵԿՏՐԱՄԵՔԵՆԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՎՈՒՄ Է

*Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի և ավտոգործարանի գիտնականների ու կոնստրուկտորների համագործակցությամբ արդեն ստեղծվել են էլեկտրամեքենաների երկու փորձանմուշներ: Մարտկոցներով աշխատող այդ մեքենաները կարող են անցնել 60—70 կմ, որից հետո մարտկոցները նորից պետք է լիցքավորվեն: Գիտնականներն ու կոնստրուկտորներն ստեղծել և փորձարկում են մի նոր էլեկտրամեքենա ևս: Ի տարբերություն նախորդ նմուշների, նորի էլեկտրասարքավորումը ունենալու է ներքին այրման շարժիչ, որով սնվելու է գեներատորը: Իսկ անհրաժեշտության դեպքում մարտկոցը կարող է լրացնել էներգիայի պակասը կամ կուտակել ավելացող էներգիան: Այս ամենը հնարավորություն կտա էլեկտրամեքենային, առանց լրացուցիչ լիցքավորման, ավելի երկար ճանապարհ անցնել, իսկ թե քանի՞ կիլոմետր՝ կպարզվի փորձարկման աշխատանքներն ավարտվելուց հետո:*



# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՈԴԻՍԱԿԱՆԸ

*Միջնադարյան հայ գրականությունը կարևոր տեղ ունի համաշխարհային մշակույթի ասպարեզում: Հայ մատենագիրների երկերը միջին դարերում համաշխարհային տարածում են ունեցել՝ թարգմանվել տարբեր լեզուներով: Դրանց մեջ առանձնահատուկ տեղ ունի Ագաթանգեղոսի «Հայոց պատմությունը», որն ամենից ավելի տարածվածն է:*

*Ագաթանգեղոսի «Հայոց պատմությունը» հենց 6-րդ դարում սկսեց տարածվել այլևայլ ուղղություններով: Դարի վերջում թարգմանվեց հունարեն, որն իր ժամանակի ամենակարևոր և ամենաընդունված գրական լեզուն էր: Միջին դարերում Ագաթանգեղոսի Պատմության հունարեն թարգմանության բավական տարածված լինելու մասին է խոսում այն փաստը, որ այսօր աշխարհի տարբեր ձեռագրատներում (օրինակ՝ Վատիկանում և Փարիզում) արդեն հայտնի են նրա բազմաթիվ ձեռագիր օրինակները:*

*Հունարեն թարգմանվելու շնորհիվ Ագաթանգեղոսի Պատմությունը մատչելի դարձավ իր ժամանակի քաղաքակիրթ աշխարհին: Մեր ձեռքի տակ է նրա արաբերեն համառոտումը 714 թվին գրված մի աշխատության մեջ: Այժմ Եգիպտոսի Սինայի վանքի մատենադարանում կա Ագաթանգեղոսի Պատմության արաբերեն ամբողջական թարգմանությունը: Բանասերները հավանական են գտնում, որ Ագաթանգեղոսը Եգիպտոսում թարգմանվել է ղպտերեն, որը հին եգիպտերենի հետագա զարգացումն է ներկայացնում: Եգիպտոսից այս մատյանը հասնում է եթովպացիների երկիրը և թարգմանվում նրանց հին լեզվով:*

*Այն գնացել, տարածվել է նաև հյուսիսում և արևմուտքում: Մեզ հայտնի է 11-րդ դարում կատարված*

*Թևավոր խոսքեր*

## ԵՐԿՆԱՅԻՆ ՄԱՆԱՆԱ

«Աստվածաշնչի» մի պատմության մեջ ասվում է, թե իբր այն ժամանակ, երբ հրեաները թափառում էին անապատում և սով էր սկսվում, հանկարծ վերևից «երկնային մանանա» է թափվում, որը և փրկում է քաղցից հյուծված մարդկանց:

Այս պատմությունը ամբողջովին չէ հորինված և հրաշք չէ:

Աստված, որ ըստ «Աստվածաշնչի», տարաբախտ թափառաշրջիկներին ուտելիք էր ուղարկել, իհարկե, այստեղ ոչ մի գործ չունի: Անապատում, ուր թափառում էր հրեա ժողովուրդը, տարածված էր քարաքոսի մի տեսակ: Սա երբ հասնում է, կեղևը ճաքճքում և մանրիկ գնդիկների է վերածվում: Այդ գնդիկները շատ նման են մանրաձավարի հատիկների: Դրանք շատ թեթև են և քամու միջոցով տարածվում են շատ հեռու: Քոչվորները հավաքում են այդ քարաքոսը, ծեծում և ստացված ալյուրից հաց են թխում:

«Երկնային մանանա» արտահայտությունը նշանակում է անսպասելի հաջողություն, հանկարծահաս օգնություն: «Սպասել երկնային մանանայի» կնշանակի անհամբերությամբ հուսալ: «Երկնային մանանայով սնվել» նշանակում է ինչ-որ ձևով, անսպասելի և անհայտ պարգևով ապրել: «Մանանա» բառը ծագել է հին հունական արմատից, որ նշանակում է «պարգևել»:

## ԹՐՋՎԱԾ ՀԱՎ

Ջրի մեջ լողացող թռչունները (բադ, սագ) այնպես են փետրավորված, որ ջրից չեն թրջվում: Անձրևի տակ նրանք նույն տեսքն ունեն, ինչ որ լավ եղանակին: Հավերը, հնդկահավերն ու մյուս ընտանի թռչունները այդ հատկությունը չունեն: Բոլորս էլ գիտենք, թե ինչ ողորմելի տեսք ունի անձրևից թրջված հավը:

Բնական է, որ «թրջված հավ» արտահայտությունը նշանակում է մոլորված, անօգնական մարդ:



մի վրացերեն թարգմանություն, իսկ ավելի ուշ թարգմանվել է նաև հին սլավոներեն: Դեռ 13-րդ դարում այս մատյանը հասել է Հռոմ և թարգմանվել լատիներեն, որը միջնադարում գրական և գիտական տիրապետող միջազգային լեզու էր ամբողջ արևմտյան Եվրոպայում:

Հայ մատենագրության այս գոհարը ունեցել է բազում խմբագրություններ, որոնք իրարից որոշ չափով տարբեր են եղել շարադրանքով, երբեմն նաև բովանդակությամբ: Դրանք նույնպես թարգմանվել են հունարեն և նրանց ձեռագրերը այժմ գտնվում են հեռավոր Իսպանիայի Էսքուրիալ կոչված հռչակավոր արքունի մատենադարանում, Մակեդոնիայի (Հարավսլավիա) Օքրիդա քաղաքում և այլուր: Դրանք թարգմանվել են նաև արաբերեն և նրանց ձեռագրերը նույնպես պահված են Երուսաղեմի և Սինայի ձեռագրատներում:

Այսօր Ագաթանգեղոսի պատմությամբ և նրա բազմալեզու թարգմանություններով զբաղվում են աշխարհի տարբեր երկրների գիտնականներ թե՛ Եվրոպայում, թե՛ Ամերիկայում: Բավական է միայն հիշել Բելգիայում գործող հայագետ բանասերների խումբը՝ նշանավոր գիտնական պրոֆ. Ժ. Գարիտի գլխավորությամբ:

ԱԴԱՄ ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆ




# ՄԱՐԴՈՒ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՎՐԴՈՎՈՒՄ Է ԵՐԿՐԻ ԸՆԴԵՐՔԸ

Մարդկային գործունեությունը հետզհետե ավելի է ներգործում երկրի ընդերքի վիճակի վրա: Ինչպես ՅՈՒՆԵՍԿՈ-ի տեղեկագիրն է հայտնում, վերջերս տեղի է ունեցել պատմության մեջ առաջին անգամ այդ խնդիրներին նվիրված գիտաժողով: Բազմաթիվ քառակուսի կիլոմետր տարածություններ ընդգրկող խոր հանքավայրերը դառնում են «բարձր ակտիվություն ունեցող երկրաշարժի պատրաստի համակարգ»,— գիտաժողովում հայտարարել է Մինեսոտի (ԱՄՆ) համալսարանի պրոֆեսոր Ն. Կուկը: Հանքագործները արդեն վաղուց գիտեն, որ ապարները «խոսում» և «թակում» են: Խոր հանքավայրերի մերձակայքում տեղադրրված երկրաշարժացույցերը հաստատել են, որ հանքային աշխատանքները նպաստում են ընդերքի երկրաշարժի ակտիվացմանը: Այդ սարքերը ցույց են տվել, որ աշխատանքային օրերին երկրաշարժի ակտիվությունը բարձրանում է, իսկ կիրակի օրերին, երբ հանքերը փակ են, իջնում է:

Դատելով ամեն ինչից, ընդերքի ակտիվացմանը նպաստում են նաև հսկայական ջրամբարները, որոնք ունեն հարյուր և նույնիսկ ավելի մետր բարձրության ամբարտակներ: Ներկայումս աշխարհում կա 275 այդպիսի ջրամբար, իսկ 135-ը դեռևս կառուցվում է: Կոլումբիայի (ԱՄՆ) համալսարանի երկրաբանական լաբորատորիայի աշխատակից Դ. Սիմփսոնը նշել է այդ ջրամբարների և հինգ բալ հզորություն ունեցող վեց երկրաշարժերի, տասներկու փոքր երկրաշարժերի և բազմաթիվ մանր ցնցումների միջև եղած փոխադարձ կապը:

Երկրաշարժային ակտիվություն է առաջանում նաև ջրի ճնշմամբ կատարվող մղումը, որն արվում է, օրինակ, նավթահորերի արտադրողականությունը բարձրացնելու համար: Ապագայում երկրաշարժեր կարող են առաջանալ նաև ստորգետնյա տաք ջուրը մեծ քանակությամբ օգտագործելու դեպքում, որը համարվում է էներգիայի չափազանց հեռանկարային աղբյուր:

Միաժամանակ, հնարավոր է, որ երկրաշարժի ընթացքի վրա մարդու գործունեության ազդեցության փաստերը մատնանշում են մի չափազանց ուրախալի հեռանկար: Դա այն է, որ հատուկ հորատված հորերը ջուր մղելով կամ ստորգետնյա, կարգավորող պայթյուններ առաջացնելով, մի շարք արհեստական, թեթև երկրաշարժերի օգնությամբ կարելի է լիցքաթափել մեծ խորությունների վրա կուտակված էներգիան:

Թարգմ. ԴԵՐԵՆԻԿ ՍԱՐԻԲԵԿՅԱՆԻ




## ԹԵՐԹԸ՝ ԹԵՅԻ ՀԵՏ

Փարիզն արտառոց հրատարակությունների թըվով առաջատար տեղ է գրավում: Օրինակ, այնտեղ հրատարակվում է «Լա Գուրմանդիզ» (քաղցըրավենիք) թերթը, որն անվնաս տպագրական ներկով տպվում է վաֆլիի ճկուն թերթերի վրա: Այդպիսի թերթը կարդալուց հետո կարելի է թեյի հետ... ուտել: Սակայն, եթե հավատանք ընթերցողներին, այս թերթը չի բավարարում նրանց ո՛չ հոգեկան, ո՛չ ստամոքսի պահանջներին: «Լե Բյեն Էտր» (լավ ինքնազգացողություն) թերթը լրացուցիչ թոշակ և անվճար թաղում է խոստանում նրանց, ովքեր կբաժանորդագրվեն իրեն միանվագ քառասուն տարով: Սակայն այդ «պայծառ» ապագան շատ քըչերին հրապուրեց: Որոշ ժամանակ հաջողություն ունեցավ «Լե Մո Ծար» (թաշկինակ) թերթը: Այն տպվում էր ճապոնական շատ նուրբ թղթի վրա և իրոք կարող էր ծառայել որպես թաշկինակ և անձեռոցիկ: Սակայն տպագրական ներկն հետքեր էր թողնում քթի և շուրթերի վրա, և թերթն աստիճանաբար զրկվեց բաժանորդներից: Եվ վերջին փորձը՝ «Լա Բոն Նովել» (լավ լուրեր) թերթը: Սա իր ընթերցողներին էր մատուցում միմիայն հաճելի հաղորդումներ, որպեսզի նրանց պահի բարձր տըրամադրության մեջ: Սակայն լույս ընծայելով տասնութ համար, թերթը սնանկացավ, քանի որ կյանքը ժամանակակից արևմուտքում ավելի ու ավելի քիչ է լավ լուրեր մատակարարում:

## ԻՆՉ Է ՀՈՒՇՈՒՄ ԱՉՔԵՐԻ ԳՈՒՅՆԸ

Անգլիացի բժիշկ-ակնաբույժ Մ. Միլլոդոտի հայտնագործությունը հիանալի ապացույց է, թե երբեմն ինչպիսի զարմանալի արդյունքի կարող է հասցնել փոքր խնդրի ուսումնասիրությունը: Միլլոդոտը հետաքրքրվեց մի փաստով, որը վաղուց նկատել էին ակնաբույժները. միակցված ոսպնյակներ կրելը ավելի տհաճություններ է պատճառում կապուտաչ մարդկանց, քան սևաչներին: Ամենայն հավանականությամբ, վճռեց Միլլոդոտը, եղջերաթաղանթի՝ թափանցիկ թաղանթի, որի մեջ գտնըվում է աչքի խննորակը, զգայականությունը կախված է աչքի գույնից:

Այս ենթադրությունը ստուգելու համար Միլլոդոտը քննեց հարյուր հիսունվեց կամավոր այցելուների: Նրանցից 112-ը սպիտակամորթ էին, 12-ը՝ սևամորթ, 15-ը՝ հնդկացի և 17-ը՝ չինացի: Նրանց միջին տարիքը քսանչորսից չէր անցնում, և ոչ մեկը վատ տեսողությամբ կամ աչքի հիվանդությամբ չէր տառապում: Փորձարկվողները խմբերի էին բաժանված ըստ աչքերի գույնի՝ կապույտ, մոխրագույն, կանաչ, շագանակագույն և սև: Փորձարկվողների աչքի եղջերաթաղանթին սարքի միջոցով աստիճանաբար աճող ճնշում էր գործադրվում, մինչև այցելուն սկսում էր զգալ այն ու սեղմում էր զանգի կոճակը:

## ՎԱՅՐԻ ՄԵՂՎԻ ՀԵՏՔԵՐՈՎ

*Ուսանողական ձմեռային արձակուրդս անց էի կացնում Կիրովականում քեռուս տղայի մոտ, որի տունը գտնվում էր Դիմաց կոչվող թաղամասի ծայրամասում: Լավ եղանակներին հաճախ որսի էինք դուրս գալիս: Մի օր էլ շատ խորացանք անտառում:*

*Հանկարծ մի ղարավոր կաղնու մոտ կզաքիսի՝ ուլունքի նմանվող հետքեր նկատեցինք ու հետապնդեցինք գազանիկին: Ինչպես հարգարժան գրող Վախթանգ Անանյանն է վկայում, կզաքիսը իր ոտքերը կույգ-կույգ է առաջ գըցում, որից շատ գեղեցիկ ոտնահետքեր են մնում: Հետքն անցնում էր անտառի ամենադժվարին տեղանքով, դժվար անց ծերպերով, մացառների արանքով: Նա մեկ բարձրացել, քարափի ծայրն էր հասել, մտել կաղնու փչակը, մեկ իջել ձորը: Ամենուր ստուգել էր ծառերի խոռոչներն ու փչակները և ոչինչ չգտնելով արագ առաջ էր ընթացել:*

*Մի հին ծառի տակ հետքը խըճճվեց, հենց այստեղ էլ մենք նըկատեցինք մոմի ու մեղրի մնացորդներ ու կիսակենդան մեղուներ: Ամեն ինչ պարզ էր: Կզաքիսը մեղվի բույն էր գտել: Ես բարձրացա ծառը, այնտեղ մի մեծ փչակ կար, մեջը՝ մեղվաընտանիք: Քեռուս տղայի օգնությամբ, մամռաչ ճյուղերով ու տերևներով խնամքով փչակը փակեցինք, չմոռանալով մի փոքրիկ անցք թողնել՝ մեղվի դուրս ու ներս անելու համար: Տեղը նշան արինք ու վերադարձանք տուն, գարնա-*

Ստացված արդյունքների վերլուծությունը հաստատեց Միլլոդոտի ենթադրությունը՝ կապուտաչների եղջերաթաղանթը կրկնակի անգամ զգայուն է սևաչների եղջերաթաղանթից: Մոխրագույն և կանաչ աչքերի զգայնությունը մի փոքր բարձր է շագանակագույններից, բայց անհամեմատ ցածր՝ կապտագույններից: Սևաչ մարդկանց եղջերաթաղանթների զգայնությունը երկու անգամ ցածր է շագանակագույն աչքերով սպիտակամորթ մարդկանց եղջերաթաղանթների զգայնությունից և քառակի անգամ պակաս, քան կապուտաչ ըսպիտակամորթներինը:

Եթե ենթադրենք, որ եղջերաթաղանթի զգայնությունը ինչ-որ ձևով արտահայտում է նաև մարդկային մարմնի ընդհանուր ցավային զգայնությունը, ապա Միլլոդոտի հայտնագործությունը կարող է լույս սփռել մի շարք կարևոր ֆիզիոլոգիական երևույթների վրա: Օրինակ, բժիշկները վաղուց նըկատել էին, որ ներգործության համար. սևաչ հիվանդներին ավելի մեծ քանակությամբ դեղ պետք է տրվի, քան կապուտաչներին: Հնարավոր է, որ ասեղնահարությամբ բժշկելն ավելի մեծ արդյունք տա Արևելքում, քան՝ Եվրոպայում, քանի որ մուգ աչքերով մարդկանց ցավի զգացությունը ավելի թույլ է:

Շոշափողական զգացողությունների և ծիածանաթաղանթի գույնի կապը մեծ մասամբ մնում է հանելուկային: Հնարավոր է, որ կապուտաչ մարդկանց եղջերաթաղանթն ավելի շատ նյարդային վերջավորություններ է պարունակում, քան՝ սևաչ մարդկանց: Եթե նույնիսկ այդպես է, ապա ինչո՞վ է բացատրվում ընդհանուր զգացողության և եղջերաթաղանթի զգացողության կապը: Միլլոդոտը ենթադրում է, որ այդ կապն իրականացվում է կենտրոնական նյարդային համակարգի միջոցով:

## ՍՊԱՍՈՒՄ ԵՆ ՁԵՐ ՆԱՄԱԿՆԵՐԻՆ

**Մեր խմբագրությունը ստանում է շատ նամակներ տարբեր հանրապետությունների պիոներներից, որոնք ցանկություն են հայտնում նամակագրական կապ հաստատելու հայ պիոներների հետ: Այսուհետև պարբերաբար կտպագրենք նրանց հասցեները:**

**Ուշադրությամբ հետևեք մեր «Փոստարկղին»: Այն կօգնի ձեզ նոր բարեկամներ ձեռք բերել, կնպաստի «Ինտերնացիոնալ բարեկամության ակումբի» ձեր աշխատանքներին:**

### ДОРОГАЯ РЕДАКЦИЯ «ПИОНЕР»

У меня к вам маленькая просьба. Я хочу переписываться с армянскими девочками и мальчиками. Передайте, пожалуйста, мой адрес! Я буду очень вам благодарен. Мне 13 лет. Интересуюсь музыкой, собираю пластинки, почтовые открытки, спичечные этикетки. Писать могу на эстонском, русском и английском языках.

**АДРЕС:** Эстонская ССР, Пайдесский район, Водя. Куурманну Тайво.

Меня зовут Ира, фамилия Мирончик. Я бы хотела переписываться с девочкой из вашей республики. Если кто-нибудь хочет со мной переписываться, дайте ей, пожалуйста, мой адрес.

**АДРЕС:** Московская обл., станция Сходня, поселок М.М.СК-1, дом № 2, кв. 34. Мирончик Ире.

Я — литовка. Мне 16 лет. Очень хочу иметь друзей в вашей стране. Если можно, поместите мой адрес на одной из страниц вашего журнала. Заранее вам благодарна.

**АДРЕС:** Литовская ССР, г. Пакружс — 235220, ул. Стадионо, дом № 31. Ладшайте Дануте.

*ևը այդտեղ գալու պայմանով: Մինչև գարուն քեռու տղան մի քանի անգամ գնացել էր «մեր ծառի» մոտ, տեսնի մեղվաընտանիքն աշխատո՞ւմ է: Մի արևոտ օր, մեկ հետ վերցրինք կացին, սղոց, պարան ու մի փոքրիկ արկղիկ, և բարձրացանք անտառ: Կտրեցինք ծառի փտած բունը: Ծառի կատարը նախապես կապել էինք հարևան ծառից, պարանի օգնությամբ ծառը դանդաղ պառկեցրինք գետնին ու բացեցինք փչակը:*

*Մեղուները հարձակվում էին մեզ վրա, անողոք խայթում: Փըչակում մեղուների անհամաչափ գործած հացերը հանելով, տեղափոխեցինք արկղի մեջ, նախօրոք տեղադրելով այն մոմահացը, որի վրա էր մայրը: Ապա մնացած մեղուն թափ տվեցինք արկղի մեջ: Բերելով տուն, մենք արկղը դատարկեցինք այգում դրված նոր փեթակում...*

*Այսօր, այդ այգում կողք-կողքի շարված են տասնյակ մեղվաընտանիքներ, որոնք անտառային հիշյալ մեղվաընտանիքի սերունդն են:*

*Անհիշելի ժամանակներից մարդը մեղրը ձեռք է բերել վայրի մեղուների բներից:*

*Ձմռանը որսորդները գնալով կզաքիսի ու ժանտաքիսի հետքերով, գտել են մեղվի բույն, ինչպես մենք գտանք, արջի եղունգների թողած քերծվածքներ ծառաբնի վրա, որ նշան է՝ արջը մեղր է գտել, և հանելու համար «աշխատանք» տարել: Ահա և մարդն էլ իր բաժինն էր վերցնում այնտեղից:*

*ԱՐԱՄԱՅԻՍ ԳԱՍՊԱՐՅԱՆ*
*Մեղվաբույծ*





ԱՆՈՒՇ ՌԱՖԱՅԵԼՅԱՆ
Պարուհիներ

## ՀԱՍԿԵ ՏԻԿՆԻԿԸ

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

**Պապիկս ճյուր եկավ մեր տուն
Ու նվիրեց ինձ մի տիկնիկ.
Աչիկներից խինդ էր ցայտում,
Լույս էր ցայտում ոսկեղենիկ:
Նրա հասկե մազերը շեկ
Փռվել էին ուսերն ի վար,
Տոտիկներին՝ հասկե մաշիկ,
Հասկե գոտիկ՝ մեջքին դալար:
Արտից ասես հենց նոր եկած,
Ձեռքին՝ ցորեն հասկի մի փունջ,
Ամռան հուրն էր բերում գրկած,
Երգ էր բերում մի քաղցրաշունչ:**



ԱՆԺԵԼԱ ՍՏԵՓԱՆՅԱՆ
Խնոցու մոտ



ԱՆԺԵԼԱ ՔՈՉԱՐՅԱՆ
Գորգագործները

# ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑԻ ՆԱԶԱՆԸ

## (Նոյեմբերյանի շրջանի ֆոլկլորից)

— Մեր հավը, արդեն յոթ-ութ օր է, ձուն բնում չի ածում, չգիտեմ, որտեղ է ածում,— ասում է հարեվանուհին Նազանին:

— Յոթ-ութ օր կլինի, որ մեր հավն էլ օրական երկու ձու է ածում,— պատասխանում է Նազանը:

* * *

Երեք տարեկան թոռնիկը խաղալիք ավտոմեքենան գցեց կաթի մեջ: Նազանը չնկատեց, որ հանի, ավտոն կաթի մեջ՝ կաթը մածուն մերեց: Աղջիկը եկավ մածունը տարավ: Լցնելու ժամանակ գդալը կպավ լարած ավտոմեքենային ու ավտոմեքենան դռռոցը դրեց:

Նազանը, երբ լսեց այդ մասին, ուրախացած բացականչեց.

— Ուզում էի մածունը Օհանենց տանեմ, լավ էր աղջկանս տվեցի, թե չէ երեխայիս մեքենան մածնի հետ ուտելու էին:

Վեցերորդ դասարանցի թոռանը «Արտեկ» ճամբարի ուղեգիր էին տվել: Ծնողները տատանվում էին՝ ուղարկե՞լ, թե՞ ոչ:

— Խամ երեխա է, գյուղից դուրս եկած չկա, հանկարծ կկորչի,— ասում է մայրը:

— Գյուղից դուրս եկած չի, թող դուրս գա, գնա աշխարհ տեսնի,— ասում է հայրը:

Շատ տվին-առան, որոշեցին ուղարկել: Տատին խնդրեցին դատարկել նոր գնած ճամպրուկը:

— Չէ,—անսպասելի մերժեց Նազանը,—դեռ ոչ մի անգամ չենք օգտագործել: Բա որ տանի ու ինքը կորչի, հետն էլ ճամպրուկը, ափսոս չէ՞:

* * *

Նազանի տղան՝ Վահրամը պոմիդորի սածիլ էր բերել ու ասել մորը՝ ձեռք չտաս, մինչև ես գամ:

Նազանը, որպեսզի պարապ չնստի, որոշեց ինքը սածիլ անի. Վահրամը վրա հասավ, տեսավ մայրը

— Վա՛յ, ինչ լա՛վն է, ինչքան չեկի՜կ,
Հասկե տոտիկ, հասկե գոտիկ...
Այդ որտեղի՞ց, պապի՛կ, ասա՛,
— Ցորենն արտի դստրիկն է սա:
Ապրում է մեր Արտաշատում,
Մեր Եղվարդում,
Մեր Սևանում...
Սնվում է նա ամռան հրով,
Կաթնաղբյուրի անուշ ջրով,
Հետո ծուփ-ծուփ ցորեն դառնում,
Ծով է դառնում ու վարարում,
Լցնում մառան,
Շտեմարան,
Գնում մտնում ամեն մի տուն
Ու զարդարում ամեն սեղան...



ԱՐՄԵՆ ՄԻՐԶՈՅԱՆ
Ավլոցը

պոմիդորի թուփ սածիլները չպրտում է, իսկ նրանց հետ եղած փարթամ մոլախոտերը սածիլում:

— Այդ ի՞նչ ես անում, ա՛յ մերս,— ասաց Վահրամն ու սկսեց արագ-արագ հանել մոլախոտերը:

— Թող մնա, որդի, աշխատանքս ինչու ես ջուրը թափում:

— Մեր սա պոմիդոր չէ, սա մոլախոտ է:

— Բան չկա, թող մնա:

— Որ թողնեմ, սրանցից բան դուրս չի գա:

— Սև բաղրիցան գոնե կբուսնի, այ որդի,— ասաց Նազանը:



Նազանի փոքր տղան ամուսնացած չէր: Մայրը խնդրեց հարսներին.

— Այնպես արեք, որ Գևորգս գոնե կարգին աղջիկ առնի, թե չէ մեր տղաներից ոչ մեկն իրեն համապատասխան աղջիկ չառավ: Ափսոս են տղաներս:

ԱՇԽԵՆ ԱՐԱԶՅԱՆ

Շապիկի առաջին էջը՝
ՆԿ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Լույս է տեսնում 1928 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 1 հունվար 1977 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 05007: Պատվեր 2007: Տպաքանակ՝ 55606: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 12/1 1977 թ.

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ.
ԻՆԴԵՔՍ 77806




## ԺԱՄԱՆՑ

488-ից մինչև 499 թվերը դասավորեցեք տասներկու շրջանագծերում այնպես, որ չորս էլիպսներից յուրաքանչյուրի վրա գտնվող չորս թվերի գումարը կազմի 1977։

Նկար-առաջարկ՝ ՍՈՒՐԵՆ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ՎՐԵԺ ՎԱՐԴՈՒՆԻ

* * *

Փոքրիկ, գունավոր
Երկու պատուհան,
Արևից, շոգից
Աչքերին՝ վահան։

(արևի ակնոց)

* * *

Հազար շնչով
Փայտե տուն,
Մեջը երգ ու
Քաղցրություն։

(մեղվափեթակ)

* * *

Գալիս է սարի
Ու քարի տակից,
Ծիծաղն է ցայտում
Աչք ու շրթունքից։

(աղբյուր)



ՏԱԹԵՎԻԿ ԴԱՎԹՅԱՆ, 5 տ.
Արտաշատ



ՎԱՀՐԻԿ ԳԱԼՍՏՅԱՆ, 12 տ.
Երևան